ԵՂԻՇԷ ՉԱՐԵՆՑԻ ԱՆՈՒԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ
ԵՒ ԱՐՈՒԵՍՏԻ ԹԱՆԳԱՐԱՆ

ՇԷՔՍՊԻՐ

# ԱՐՔԱՅ ԼԻՐ

Թարգմանութիւնը
Յովհաննէս Խան-Մասեհեանի
Եղիշէ Չարենցի ստեղծագործական
խմբագրութեամբ

Գրականութեան եւ արուեստի թանգարանի հրատարակչութիւն
Երեւան - 2006

ՀՏԴ 820-2 Շէքսպիր
ԳՄԴ 84.4 Մբ
Շ 537

**ԳԻՐՔԸ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԵԼ Է
ԱՐՄԷՆ ԵՒ ՄԻՄԻ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՆԵՐԻ
ՄԵԿԵՆԱՍՈՒԹԵԱՄԲ**

Հրատարակութեան պատրաստեց
**ՀԵՆՐԻԿ ԲԱԽՉԻՆՅԱՆԸ**

Շ 537 Շէքսպիր, Արքայ Լիր: Ողբերգութիւն. - Եր.:
ԳԱԹ հրատ., 2006, 222 էջ:

Գիրքը ներկայացնում է Շէքսպիրի «Արքայ Լիր» ողբերգութեան Յովհաննէս Խան-Մասեհեանի թարգմանութիւնը՝ Ե. Զարենցի ստեղծագործական խմբագրութեամբ: Հատորն ունի առաջաբան: Տեքստը տպագրւում է առաջին անգամ:

Շ $\frac{4703010300}{841(01)2006}$ 2006 ԳՄԴ 84.4Մբ



ISBN 99930-60-64-X

## ՉԱՐԵՆՑ ԵՒ «ԱՐՔԱՅ ԼԻՐ»

1928–1935 թուականներին վարելով Պետհրատի գեղարուեստական գրականութեան բաժինը՝ Եղիշէ Չարենցն իր մշակած ծրագրով հրատարակել եւ հրատարակութեան է պատրաստել հայ եւ համաշխարհային գրականութեան բազմաթիւ ընտիր նմուշներ: Նա հանդէս է եկել թէ՛ որպէս թարգմանիչ եւ թէ՛ որպէս կազմող ու խմբագիր: Այսպէս, 1934-ին նրա խմբագրութեամբ լոյս է տեսել Շէքսպիրի «Մակբէթը» (թարգմանիչ՝ Յովհաննէս Խան-Մասեհեան): Նոյն թուականին մեծ բանաստեղծը ձեռնարկել է նաեւ տպագրել Շէքսպիրի իր նախասիրած մէկ այլ ողբերգութիւնը՝ «Արքայ Լիրը»: Այս կապակցութեամբ նա խնդրել է Ռուբէն Զարեանին գտնել ողբերգութեան Յովհ. Խան-Մասեհեանի թարգմանութիւնը՝ խմբագրելու համար[1]:

«Տարայ գիրքը:– Պատմում է Ռուբէն Զարեանն իր յուշերում[2]:– Ասաց, որ մի երկու օրից կսկսի: Եւ, իսկապէս, սկսեց: Տողած թուղթը դրեց առաջը, Խան-Մասեհեանի թարգմանութիւնը՝ մյուս կողմը եւ սկսեց արտագրել՝ տեղնուտեղը խմբագրական փոփոխութեան ենթարկելով: Սկզբում բաւական հարազատ մնաց թարգմանութեանը, փոխում էր քիչ, իսկ յետոյ փոփոխութիւնները շատացան: Թարգմանութիւնը մաքրում էր հնաբանութիւններից՝ պահպանելով ոճի վեհութիւնը, լեզուն այժմէացնում էր, մի բանի տեղ դնում էր մի ուրիշը, աշխատում մտքին հաղորդել չեշտակի եւ դիպուկ արտայայտութիւն»:

---

[1] Խօսքը «Արքայ Լիրի» 1898 թ. թիֆլիսեան հրատարակութեան մասին է:

[2] Ռ. Զարեանի յուշերից այս եւ յաջորդ մէջբերումները կատարում ենք «Հիշողություններ Եղիշե Չարենցի մասին» գրքից (Երևան, 1961, էջ 365–367):

Խմբագրական առաւել հիմնաւոր աշխատանք կատարելու համար Չարենցը, Ռ. Ջարեանի վկայութեամբ, օգտուել է նաեւ ռուսերէն թարգմանութիւններից եւ անգամ դիմել է գերմաներէն թարգմանութեան... «Ինչ-որ կասկածներ էին ծագել, որ հանգիստ չէին տալիս նրան... ամբողջապէս համակուած էր Շէքսպիրի ողբերգութեամբ»: Երբեմն Չարենցն ինքը թելադրել է, իսկ Ռ. Ջարեանը՝ գրել: Միասին քննարկել են որոշ խմբագրուած հատուածներ...

Չարենցն ամբողջապէս աւարտել է Խան-Մասեհեանի թարգմանութեան իր խմբագրութիւնը եւ այդ աշխատանքով ոգեւորուած՝ հաստատապէս վճռել է նորովի թարգմանել «Արքայ Լիրը», որի մասեհեանական թարգմանութիւնը, իր հիմնաւոր խմբագրութեամբ հանդերձ, նրան չի բաւարարել: «Ես այս կյանձնեմ, կարող են տպել: Սա առաջին էտապն է, յետոյ ինքս կթարգմանեմ: Անպայման կթարգմանեմ: Ոչինչ, որ անգլերէն չգիտեմ: Զգում եմ, որ Լիրը հոգուս մէջ է, կարծես մի հարազատ անձ լինի, այնպէս եմ զգում նրան»:

Որ Չարենցն արդէն 1934 թուականին ցանկութիւն է ունեցել թարգմանել «Արքայ Լիրը», ինչպէս նաեւ «Համլէտը», վկայել է նաեւ բանաստեղծի ժամանակակիցներից մէկ ուրիշը՝ Սարգիս Մելիքսէթեանը[3]:

Ըստ Ռ. Ջարեանի, Չարենցը որոշ ժամանակ անց իսկապէս անցել է «երկրորդ էտապին», այսինքն՝ սկսել է թարգմանել «Արքայ Լիրը»: «Չեմ ուզում մթնոլորտից դուրս գալ,– ասել է բանաստեղծը,– լաւ կլինի հիմի անեմ, թէ չէ վախենում եմ յետոյ սառչեմ»: Ռ. Ջարեանը յաճախ ներկայ է եղել նաեւ թարգմանութեան ընթացքին: Նրա վկայութեամբ, Չարենցն «աշխատում էր արագ թափով, բայց երբեմն կանգ էր առնում, մի ձեւով փորձում, այլ կերպ գրում, եւ երբ չէր ստացւում՝ ջղայնանում էր, վրդովւում...Լիրի կերպարը դարձել էր նրան հարազատ, մօտ ու սիրելի: Շատ էր խօսում նրանից, հազար ու մի դիտողութիւն անում:– «Լիրը» Շէքսպիրի ամենալաւ գործն է, ամենախոր, ամենաընդգրկուն: Իսկ մի օր էլ ասաց.

– Գիտե՞ս, թէեւ սքանչելի գործ է՝ անհնար է խաղալ: Ամբողջը միտք է, փիլիսոփայութիւն, ինչպէ՞ս խաղաս: Ուզես-չուզես՝ գործողութիւնն առաջ կընկնի եւ կդառնայ մի սովորական սրտառուչ պատ-

[3] Տես «Բանբեր պետական արխիվների», 1966, թիւ 3, էջ 196:

մութիւն: Չեմ պատկերացնում բեմում: Կարդալ, միայն կարդալով կարելի է սրա ողջ խորութեանը հասնել»:

Հաւանաբար 1934-ից յետոյ բանաստեղծի կեանքի ողբերգական ընթացքը խանգարել է նրան շարունակել եւ ամբողջացնել աշխատանքը, ինչպէս որ անաւարտ է մնացել Գեօթէի «Ֆաուստի» նրա թարգմանութիւնը:

Յամենայն դէպս, առ այսօր չի յայտնաբերուել «Արքայ Լիրի» (ոչ էլ «Համլէտի») նրա թարգմանութիւնը, չունենք նաեւ ոչ մի տուեալ, որ նա ամբողջապէս թարգմանել է այդ գործերը: Թերեւս մի օր երջանիկ պատահականութեամբ յայտնաբերուեն «Արքայ Լիրի» նրա սկսած եւ հաւանաբար անաւարտ մնացած թարգմանութեան էջերը...

Ինչ վերաբերում է Յովհ. Խան-Մասեհեանի թարգմանութեան նրա խմբագրութեանը, ապա դրա ձեռագիրը Ռ. Զարեանը, իր իսկ վկայութեամբ, յանձնել է Պետհրատի այն ժամանակուայ տնօրէն Էդուարդ Չոփուրեանին: «Յիշում եմ, առաջին էջի վրայ գրել էր խնդրանք – չկորցնել ձեռագիրը եւ օգտագործելուց յետոյ անպայման վերադարձնել իրեն»:

Չարենցի այդ ձեռագիրը դեռեւս 1938 թուականի ամռանը գտնուել է Պետհրատի գեղարուեստական գրականութեան բաժնում: Այստեղ այն տեսել եւ մասամբ արտագրել է արժանայիշատակ գրականագէտ Արամ Ինճիկեանը: Նա իր արտագրութիւնը, մի համառօտ ծանօթագրութեամբ, 1956-ին յանձնել է Գրականութեան եւ արուեստի թանգարանին (ԳԱԹ), որը պիտի շուրջ մէկ տասնամեակ անց կոչուէր Չարենցի անունով: Յետագայում Թանգարանի ձեռագրատան վարիչ Գոհար Ազնաւուրեանի խնդրանքով Ա. Ինճիկեանն այդ կապակցութեամբ գրել է մի համեմատաբար աւելի ծաւալուն ծանօթութիւն, որ հարկ ենք համարում բերել ստորեւ.

«1938 թ. ամռանն էր: Տպագրութեան էի պատրաստում Սզարիա Աղէլեանի Երկերի ժողովածուն եւ այդ առթիւ երբեմն լինում էի Պետհրատի գեղարուեստական գրականութեան բաժնում: Բաժնի քարտուղարն էր Վահան Տէրեանի եղբօր՝ Արամի կինը՝ Հայկանուշ Տէր-Գրիգորեանը, մի շատ բարեկիրթ, ազնուաբարոյ, կարեկից հոգու տէր անձնաւորութիւն: Նա բացառիկ ուշադիր եւ հոգատար էր մանաւանդ երիտասարդ այցելուների նկատմամբ: Մի անգամ, սովորական զրոյցի ժամանակ, հայեացքս ընկաւ նրա սեղանի վրայ գտնուած ձեռագրի անուանաթերթին՝ «Արքայ Լիր»... Չարենցի

ծանօթ ինքնագիրն էր եւ ստորագրութիւնը՝ նոյն անուանաթերթի վրայ գրուած երկտողի տակ. «Ընկ. Զոփուրեանին, խնդրում եմ չկորցնել ձեռագիրը եւ օգտագործելուց յետոյ անպայման վերադարձնել: Ե. Չարենց»:

Չարենց եւ «Արքայ Լիր»...

Ինձ համար շատ գայթակղիչ անակնկալ էր:

Իմ հարցումին, թէ ինչպէ՞ս եւ որտեղի՞ց է յայտնաբերուել Չարենցի ձեռագիրը, եւ Պետհրատն ի՞նչ է մտադիր անելու, տիկին Հայկանուշը տխուր պատասխանեց, թէ կարգադրուած է բաժնի արխիւից առանձնացնել «ժողովրդի թշնամիների» ձեռագրերը, ցուցակագրել եւ սպասել յետագայ կարգադրութեան:

Պարզ էր, թէ ի՛նչ էր սպասում Չարենցի ձեռագրին...

– Հնարաւոր չէ՞, արդեօք, թաքցնել մի տեղ, չյանձնել:

Տիկին Հայկանուշն ասաց, որ ցուցակն արդէն կազմուած է:

Ես խնդրեցի թոյլ տալ ձեռագիրը տուն տանել, ընդօրինակել եւ վերադարձնել:

Տիկին Հայկանուշը համաձայնուեց, պայմանով, որ աշխատանքի վերջին տանեմ եւ առաւօտեան վաղ բերեմ, քանի որ յանկարծ կարող են պահանջել:

Մեր պայմանաւորուածութեան համաձայն, մի քանի օր, հիմնարկը փակելուց առաջ, ձեռագիրը թերթի մէջ փաթաթած՝ տիկին Հայկանուշը տալիս էր ինձ. գիշերները տանը ընդօրինակում էի նոյնութեամբ, ուղիղ փակագծերի մէջ վերցնելով ջնջուած տեղերը եւ հետեւեալ առաւօտեան տանում Պետհրատ:

Երեք թէ չորս օրից յետոյ տիկին Հայկանուշն ասաց, որ ցուցակում նշուած ձեռագիրն արդէն յանձնելու են, եւ շատ ցաւում է, որ այլեւս հնարաւոր չէ Չարենցի ձեռագիրը տուն տանել:

Այդպիսով, ես հնարաւորութիւն ունեցայ ընդօրինակելու Շէքսպիրի հանճարեղ երկի հայերէն թարգմանութեան Չարենցի խմբագրութիւնից երկու արարուած միայն... Ա. Ինճիկեան»[4]:

Ուրեմն, Ա. Ինճիկեանի և Հ. Տէր-Գրիգորեանի շնորհիւ փրկուել է Չարենցի խմբագրած «Արքայ Լիրի» երկու արարուած (առանց «Գործող անձերի») և 1956-ին բերուել ԳԱԹ՝ ընդգրկուելու Չարենցի ֆոնդում:

---

[4] ԳԱԹ, Չարենցի ֆոնդ, 139 ա: «Բանբեր պետական արխիվների», 1966, թիւ 3, էջ 194:

Այնուհետեւ Գ. Ազնաւուրեանի ջանքերով Թանգարանի թատերական փոնդերի տպագիր եւ անտիպ պիեսների հաւաքածուի մէջ յայտնաբերուեցին Չարենցի խմբագրութեամբ «Արքայ Լիրի» երեք նոյնական մեքենագիր կազմուած ամբողջական օրինակներ (դարձեալ առանց «Գործող անձերի»): Այս առթիւ Գ. Ազնաւուրեանը «Բանբեր պետական արխիվների» հանդէսում տպագրեց մի յօդուած՝ «Շէքսպիրը Չարենցի թարգմանութեամբ», որտեղ անդրադարձել է թէ՛ Ա. Խնճիկեանի արտագրութեանը և թէ՛ յայտնաբերուած մեքենագիր օրինակներին՝ նշելով դրանց բովանդակութեան համապատասխանութիւնը: Ինչպէս իր յօդուածի վերնագրում, այնպէս էլ շարադրանքի մէջ Գ. Ազնաւուրեանը բազմիցս Չարենցի խմբագրութիւնը համարել է թարգմանութիւն, թէեւ վերջում գրել է. «Այն հարցը, թէ Չարենցի ձեռագիրը ստեղծագործական-խմբագրական աշխատա՞նք պէտք է համարել, թէ՞ թարգմանութիւն, թողնում ենք մասնագէտների քննութեանը»[5]: Ազնաւուրեանն ինքը զուգադրել է Խան-Մասեհեանի թարգմանութիւնից եւ Չարենցի խմբագրած օրինակից որոշ հատուածներ՝ ցոյց տալու համար դրանց միջեւ եղած տարբերութիւնը, այն է՝ Չարենցի կատարած փոփոխութիւնները, որոնց շնորհիւ «ստացուել է փաստօրէն մի նոր թարգմանութիւն, վայել Չարենցի գրչին ու անուանը»: Չարենցի կատարած փոփոխութիւնները, անշուշտ, բաւական շատ են, բայց այդքանն էլ իրաւունք չի տալիս նրա աշխատանքն անվերապահ թարգմանութիւն կոչել. այն աւելի շատ *ստեղծագործական խմբագրութիւն* է:

Փորձելով պատասխանել այն հարցին, թէ Չարենցը երբ է կատարել այդ աշխատանքը, Գ. Ազնաւուրեանը ենթադրել է, որ այն սկսուել է «1935 թ. և վերջացել 1936 թ., երբ դեռևս իր պաշտօնում էր Պետհրատի այն ժամանակուայ դիրեկտոր Էդուարդ Չօփուրեանը, որին ներկայացուել էր թարգմանութիւնը ինքնագիր վիճակում»: Գ. Ազնաւուրեանը, փաստօրէն ծանօթ չի եղել Ռ. Զարեանի այդ ժամանակ արդէն տպագրուած յուշերին, որոնց համաձայն «Արքայ Լիրի» խմբագրութիւնը Չարենցը սկսել է 1934-ին: Մեր կարծիքով այդ թուականին էլ (կամ ամենաուշը 1935-ի սկզբին) աւարտուել է խմբագրական աշխատանքը՝ նկատի ունենալով Չարենցի արագ աշխատանքը...

[5] «Բանբեր պետական արխիվների», 1966, թիւ 3, էջ 197: Գոհար Ազնաւուրեանից յաջորդ մէջբերումները նոյնպէս կատարուած են այս աղբիւրից:

Ազնաւուրեանն իր կատարած համեմատութիւնների միջոցով պարզել է, որ Չարենցը ձեռքի տակ է ունեցել Յովհ. Խան-Մասեհեանի թարգմանութիւնը եւ օգտուելով «նրա աշխատանքից՝ հիմնականում արձակ հատուածները թողել է նոյնը, առանձին անյաջող բառերը փոխարինելով աւելի յարմար բառերի, իսկ ստեղծագործական աշխատանքը մեծ մասամբ կենտրոնացրել է չափածոյ հատուածների վրայ, որոնց տարբերութիւնն ակնբախ է»:

Գ. Ազնաւուրեանը փորձել է պարզաբանել նաւ, թէ յիշեալ մեքենագիր օրինակները ե՞րբ եւ ո՞ւմ կողմից են յանձնուել Թանգարանի թատերական ֆոնդերին: Սակայն նրա որոնումները արդիւնք չեն տուել, եւ նա միայն ենթադրել է, որ Չարենցի խմբագրած օրինակի ձեռագիրը «գտնուել է ինչ-որ անհատի մօտ, եւ նա, երկիւղ կրելով ձեռագրի անյայտացման վտանգից, մի կերպ մեքենագրել է այն եւ յանձնել ինչ-որ համապատասխան հիմնարկի, նկատի ունենալով նրա կարեւորութիւնը»: Այդ «համապատասխան հիմնարկից» էլ Ս. Մելիքսէթեանի տնօրինութեան օրոք այդ մեքենագիր օրինակները յայտնուել են Գրականութեան եւ արուեստի թանգարանում, եւ այժմ դրանցից մէկն ընդգրկուել է Չարենցի ֆոնդում (139 ք):

Չարենցի, որպէս «ժողովրդի թշնամու», ձեռագիրը Պետհրատից բռնագրաւուել է եւ ամենայն հաւանականութեամբ ոչնչացուել... Եւ մեզ անյայտ մէկի, Ա. Ինճիկեանի նման մէկ այլ չարենցասէրի ձեռքով մեքենագրուելով՝ փաստօրէն այդ աշխատանքը փրկուել է անդարձ կորստից: Ռ. Զարեանի յուշերից եւ Գ. Ազնաւուրեանի յօդուածից մէջբերումներ կատարելով՝ արդէն տեսանք, թէ ինչ կարգի աշխատանք է կատարել Չարենցը. նա ըստ էութեան նոր կեանք է տուել «Արքայ Լիրի» մասեհեանական թարգմանութեանը՝ այն դարձնելով շատ աւելի հնչեղ ու բանաստեղծական, ներարկելով իր անհատական շունչն ու ոգին:

Ռ. Զարեանն իր յուշերում, ըստ երեւոյթին իր կատարած գրառումներից, բերել է Չարենցի մշակած օրինակներից մի հատուած, որը ողբերգութեան հինգերորդ արարուածի երրորդ տեսարանից է: Բերենք այդ խմբագրուած հատուածը՝ զուգադրելով այն Յովհաննէս Խան-Մասեհեանի՝ համապատասխան հատուածի թարգմանութեանը:

| ՉԱՐԵՆՑ | ԽԱՆ-ՄԱՍԵՀԵԱՆ |
| --- | --- |
| *Երբ դու ինձանից օրհնութիւն խնդրես,* | *Երբ դու ինձանից օրհնութիւն խնդրես.* |
| *Ծնրած քո առջեւ՝ ինքս քեզանից* | *Կը չոքեմ քո առջեւ, ներում կը հայցեմ,* |
| *Ներում կհայցեմ. այսպէս մենք կապրենք,* | *Այսպէս մենք կ՚ապրենք, կ՚աղօթենք,* |
| *Կաղօթենք, կերգենք եւ հին հէքեաթներ* | *կ՚երգենք* |
| *Կպատմենք իրար եւ կծիծաղենք* | *Եւ հին հէքիաթներ կը պատմենք* |
| | *միմեանց* |
| *Այն թիթեռների վրայ ոսկեթեւ,* | *Եւ կը ծիծաղենք այն ոսկեթեւին* |
| *Որ որպէս խղճուկ թշուառականներ* | *Թիթեռների վրայ. ականջ կը դնենք,* |
| *Խօսում են ճղճիմ գործերի մասին,* | *Թէ ինչպէս խեղճուկ թշուառականներ* |
| *Լուրերի մասին այն պալատական.* | *Խօսում են պալատի լուրերի վերայ.* |
| *Մենք էլ նրանցից կիմանանք այդ սին* | *– Մենք ինքներս էլ նրանց հետ* |
| *Գործերի մասին՝ թէ ով է ընկել,* | *կը խօսենք,* |
| | *Թէ ո՛վ է շահում, ո՛վ է կորցնում,* |
| *Ով է բարձրացել կամ հարստացել,* | *Ո՛վ է բարձրանում, կամ ո՛վ է ընկնում.* |
| *Ո՛մ գործերն են վատ եւ ո՛մ՝ յաջողակ,* | *Եւ կը բացատրենք իրերի գաղտնիքն* |
| *Եւ այդ գործերի էութիւնը ջոկ* | *Որպէս թէ Աստուծոյ լրտեսներն էինք.* |
| *Դիտելով՝ մենք մեզ կբացատրենք* | *Այսպէս մի բանտի պարիսպների մէջ* |
| *Իրերի գաղտնիքն, ինչպէս Աստուծոյ* | *Կը մաշենք մեծերի խմբեր եւ դասեր,* |
| *Երկու ընտրեալներ կամ առաքեալներ...* | *Որոնք լուսնի հետ կ՚ելնեն* |
| *Եւ այսպէս, բանտի պարիսպների մէջ* | *եւ կ՚իջնեն...*[6] |
| *Կմաշենք բազում մեծամեծների* | |
| *Խմբեր ու դասեր, որոնք լուսնի հետ* | |
| *Կելնեն ու կիջնեն, կելնեն ու կիջնեն...* | |

Չարենցի խմբագրած տարբերակն, ինչպէս տեսնում ենք, անհամեմատ աւելի գեղեցիկ է, սակայն տողերի քանակով աւելի շատ է ստացուել[7]: Երբ Ռ. Զարեանն այդ մասին ասել է նրան, բանաստեղծը պատասխանել է. «Բայց դա ի՞նչ կարեւոր է, հաշուապահութիւն հո չէ: Էականը ոգին է: Եթէ դա կայ՝ լաւ է»:

[6] Շէքսպիր, Արքայ Լիր, թարգմ. անգլիերէնից Յովհ. Խան-Մասեհեան, Թիֆլիս, 1898, էջ 163:

[7] Ուշագրաւ է, որ Խաչիկ Դաշտենցի թարգմանութեան մէջ նշուած հատուածը Մասեհեանի թարգմանութեան համեմատ աւելի քիչ տողեր է ընդգրկում (տես *Վիլյամ Շեքսպիր*, Ընտիր երկեր, հտ. 1, Երեւան, 1964, էջ 606–607):

# Արքայ Լիր

## Ողբերգութիւն հինգ արարուածով



## ԳՈՐԾՈՂ ԱՆՁԵՐ

ԼԻՐ, թագաւոր Բրիտանիայի
ԹԱԳԱՒՈՐ ՖՐԱՆՍԻԱՅԻ
ԴՈՒՔՍ ԲՈՒՐԳՈՆԴԻԱՅԻ
ԴՈՒՔՍ ԿՈՐՆՎԱԼԻ
ԴՈՒՔՍ ԱԼԲԱՆԻԻ
ԿՈՄՍ ՔԷՆՏԻ
ԿՈՄՍ ԳԼՈՍՏԷՐԻ
ԷԴԳԱՐ, Գլոստէրի որդին
ԷԴՄՈՆԴ, Գլոստէրի ապօրինի զաւակը
ԽԵՂԿԱՏԱԿ
ԿՈՒՐԱՆ, մի պալատական
ՄԻ ԾԵՐՈՒՆԻ, Գլոստէրի հպատակ
ՄԻ ԲԺԻՇԿ
ՕՍՎԱԼԴ, Գոներիլի տան վերակացու
ՄԻ ՍՊԱՅ, Էդմոնդի հրամանի տակ
ՄԻ ԱՍՊԵՏ, Կորդելիայի ծառայութեան մէջ
ՄԻ ՄՈՒՆԵՏԻԿ
ԿՈՐՆՎԱԼԻ ԾԱՌԱՆԵՐ
ԳՈՆԵՐԻԼ }
ՌԵԳԱՆ } Լիրի աղջիկները
ԿՈՐԴԵԼԻԱ }

Լիրի ասպետները, սպաներ, սուրհանդակներ, զինուորներ և սպասաւորներ

Տեսարանն է Բրիտանիայում:



# ԱՐԱՐՈՒԱԾ ԱՌԱՋԻՆ

## ՏԵՍԱՐԱՆ Ա.

**Լիր արքայի պալատը**
**Մտնում են Քէնտը, Գլոստէրը եւ Էդմոնդը:**

ՔԷՆՏ

Ես կարծում էի թագաւորը Ալբանիի դուքսին աւելի է սիրում, քան Կորնվալին:

ԳԼՈՍՏԷՐ

Մեզ էլ միշտ այդպէս էր թւում, բայց այժմ, երբ նա բաժանում է իր թագաւորութիւնը, ամենեւին չի երեւում, թէ դուքսերից որին է աւելի գնահատում, որովհետեւ բաժինները այնքան հաւասար կիսուած են, որ բծախնդրութիւնն անգամ չի կարող գերադասել մի բաժինը միւսից:

ՔԷՆՏ

Արդեօք սա ձեր որդին չէ՞, միլո՛րդ:

ԳԼՈՍՏԷՐ

Այո՛ պարո՛ն, նրան ես եմ մեծացրել: Ես այնքան յաճախ եմ կարմրել նրան իմ որդին ճանաչելու համար, որ հիմա երեսս պնդացել է:

ՔԷՆՏ

Ես ձեզ չեմ հասկանում:

ԳԼՈՍՏԵՐ

Սակայն այս պատանու մայրը ինձ լաւ էր հասկանում, այնքան լաւ, որ նրա փորը կլորեց, եւ նա ունեցաւ մի զաւակ՝ օրօրոցում, նախքան կունենար մի ամուսին՝ իր անկողնում: Հասկացա՞ր յանցանքը:

ՔԵՆՏ

Ես չէի ուզենայ, որ այդ յանցանքը կատարուած չլինէր. նրա արգասիքն այնքա՛ն գեղեցիկ է:

ԳԼՈՍՏԵՐ

Բայց, տէ՛ր իմ, ես ունեմ մի օրինաւոր զաւակ՝ մի քանի տարով աւելի մեծ, քան սա, սակայն նա աւելի սիրելի չէ, թէեւ այս անպիտանը մի քիչ աներեսութեամբ աշխարհ եկաւ, նախքան իրեն կկանչէին: Բայց մայրը գեղեցիկ էր. եւ մենք այնքան էինք զուարճանում սրան արտադրելիս, որ այժմ պարտաւոր եմ ճանաչել այս անպատկառի ձագին: Ճանաչո՞ւմ ես այս ազնիւ պարոնին, Էդմո՛նդ:

ԷԴՄՈՆԴ

Ո՛չ, տէ՛ր իմ:

ԳԼՈՍՏԵՐ

Քէնտի կոմսն է: Այսուհետեւ լա՛ւ հիշի՛ր նրան, որպէս իմ յարգելի բարեկամին:

ԷԴՄՈՆԴ

Ես միշտ պատրաստ եմ ծառայելու բարոնին, լորդին:

ՔԵՆՏ

Դուք ինձ դուր էք գալիս, եւ յոյս ունեմ, որ ձեզ աւելի մօտիկից կծանօթանամ:

ԷԴՄՈՆԴ

Կաշխատեմ արժանանալ ձեր ուշադրութեանը:

ԳԼՈՍՏԷՐ

Ինը տարի է, որ նա չի եղել հայրենիքում եւ շուտով կրկին գնալու է: Արքան գալիս է:

**Փողի ձայներ. մտնում են Լիրը, Կորնվալը, Ալբանին, Գոներիլը, Ռեգանը, Կորդելիան:**

ԼԻՐ

Գլո՛ստէր, ընկերացի՛ր Ֆրանսիայի թագաւորին եւ Բուրգունդի դուքսին:

ԳԼՈՍՏԷՐ

Ես պատրաստ եմ, տէ՛ր:

**Գլոստէրը գնում է:**

ԼԻՐ

Իսկ մինչ այդ՝ հիմա մենք պէտք է յայտնենք
Աւելի գաղտնի մեր նպատակը:
Տուէ՛ք քարտէզը: Թող յայտնի լինի,
Որ բաժանել ենք մեր պետութիւնը
Երեք մասերի եւ հաստատ վճռել
Թօթափել ամէն հոգս ու տքնութիւն
Մեր ծեր ուսերից եւ յանձնել դրանք
Մեզանից կայտառ ուժերի, իսկ մենք
Այդ մեծ հոգսերից թեթեւանալով՝
Կընթանանք դէպ մահ: Մեր որդի Կորնվա՛լ,
Եւ դու սիրելի որդի Ալբա՛նի,
Որոշել ենք մենք յայտնել նախապէս
Մեր մեծ դուստրերի օժիտն ամենայն,
Որ ապագայում որեւէ վէճի
Առիթ չմնայ: Արքան Ֆրանսիայի
Եւ բուրգոնդացին՝ երկու մրցակից
Մեր փոքր դստեր սիրո պայքարում,
Արդէն վաղուց է, որ սպասում են
Սիրային յոյսով մեր արքունիքում:



2*

Եւ արդ՝ պատասխան պէտք է տալ նրանց:
Ասացէ՛ք, սակայն, դստե՛րք սիրասուն
(Քանզի մենք շուտով թօթափելու ենք
Թէ՛ իշխանութիւն, թէ՛ հոգս պետական
Եւ թէ՛ պետութեան տքնութիւն անհինչ),
Ո՞րը ձեզանից, թոյլ տուէք ասել,
Ունի դէպի մեզ աւելի մեծ սէր,
Որ մենք էլ սփռենք աւելի բարիք...
Քանզի արժանիքն իրաւունք ունի
Իր առանձնակի վարձը պահանջել.
Իհարկէ, բացի այն գորովանքից,
Որ բնութիւնն է պահանջում ինքնին:
Առաջ, Գոների՛լ, իբրեւ անդրանիկ,
Առաջ դո՛ւ խօսիր:

ԳՈՆԵՐԻԼ

Ես սիրում եմ ձեզ,
Տէ՛ր իմ, առաւել, քան բառերը սին
Կարող են յայտնել, եւ դուք ինձ համար
Թանկ էք առաւել, քան լոյսն աչքերի,
Քան ազատութիւն, քան ամենայն ինչ,
Որ համարւում է հազուագիւտ եւ ճոխ:
Ես սիրում եմ ձեզ, որքան որ կեանքը՝
Լի երջանկութեամբ, փառքով ու շուքով,
Լի գեղեցկութեամբ ու առողջութեամբ:
Ես սիրում եմ ձեզ, որքան երբեւէ
Սիրուել է մի հայր, մի զաւակ սիրել,
Մի սէր, որի մօտ տկար է շունչը,
Եւ խօսքը՝ անզօր. մի խօսքով, տէ՛ր իմ,
Ես սիրում եմ ձեզ առաւել, քան մի
Չափելի սահման:

ԿՈՐԴԵԼԻԱ

*(Առանձին)*.

Էլ ի՞նչ կարող է
Կորդելիան ասել. սիրել եւ լռել:

ԼԻՐ

Այս սահմաններում՝ այստեղից այստեղ,
Լի անտառներով՝ խիտ եւ հովասուն,
Բերրի դաշտերով, առատ գետերով
Եւ անծայրածիր մարգագետինով
Քեզ եմ սահմանում ես արդ տիրուհի:
Թող Ալբանիի եւ քո սերնդին
Պատկանեն դրանք մինչեւ յաւիտեան:
Ի՞նչ է ասում արդ իմ դուստրը երկրորդ՝
Կորնվալի կին քնքուշ Ռեգա՛ն:

ՌԵԳԱՆ

Ես ստեղծուած եմ միեւնոյն նիւթից,
Ինչպէս եւ քոյրս, միեւնոյն ենք մենք.
Եւ գտնում եմ ես իմ անկեղծ սրտում,
Ամբողջ այն սէրը, որ յայտնեց նա ձեզ.
Իսկ մի յաւելում ես պիտի անեմ.
Ես թշնամի եմ ինձ յայտարարում
Բոլոր երկրային նուրբ վայելքներին,
Եւ գտնում եմ իմ երջանկութիւնը
Դէպի ձեզ տածած սիրոյ մէջ միայն:

ԿՈՐԴԵԼԻԱ

Վա՜յ քեզ, ուրեմն. խղճո՛ւկ Կորդելիա,
Բայց ո՛չ, ո՛չ խղճուկ, քանզի վստահ եմ,
Որ սէրս մեծ է, քան լեզուս տկար:

ԼԻՐ

Քեզ եւ սերնդիդ իբր ժառանգութիւն
Թող մեր գեղեցիկ թագաւորութեան
Այս երրորդ մասը մնայ յաւիտեան,
Ո՛չ տարածութեամբ, կամ գեղեցկութեամբ,
Ո՛չ էլ արժէքով պակաս չէ սա քո
Քոյր Գոներիլին վիճակուած մասից:
Այժմ դո՛ւ խօսիր, սիրելի դստրի՛կ,
Որ վերջինն ես մեր, բայց ոչ չնչինը.

Դու, որի քնքուշ սիրո պատճառով
Ֆրանսիայի որթն ու Բուրգոնդի կաթը
Մրցում են հիմա: Ի՞նչ պիտի ասես,
Որ արժանանաս մի երրորդ բաժնի,
Ավելի շքեղ, քան քույրերինը:

КОРДЕЛИА

Ոչինչ, տէ՛ր:

ԼԻՐ

Ոչի՞նչ:

КОРДЕЛИА

Այո, տէ՛ր, ոչինչ:

ԼԻՐ

Ոչնչից միայն ոչինչ դուրս կգայ:
Խօսի՛ր դու սակայն:

КОРДЕЛИА

Որքա՜ն դժբախտ եմ,
Որ չեմ կարենում բարձրացնել սիրտս
Մինչեւ շուրթերս: Ես քեզ սիրում եմ,
Ինչպէս իմ պարտքն է պահանջում, արքա՛յ,
Օ՜, ոչ աւելի եւ ոչ էլ պակաս:

ԼԻՐ

Ի՞նչ է, Կորդե՛լիա, ուղղի՛ր խօսքերդ,
Թէ չես կամենում բախտդ կործանել:

КОРДЕЛИА

Ո՛վ հայր իմ բարի, դուք ծնել էք ինձ,
Կրթել եւ սիրել: Դրա փոխարէն
Հատուցանում եմ ինչպէս որ հարկն է,
Սիրում եմ ես ձեզ, յարգում ու լսում:
Ինչո՞ւ իմ քոյրերն ամուսին ունեն,

Եթէ իսկապէս ձեզ եմ լոկ սիրում:
Եթէ պատահմամբ ես ամուսնանամ,
Նա, ով ստացաւ իմ առհաւատչեան,
Կտանի իր հետ նաեւ իմ սէրը,
Պարտականութեան, խնամքի կէսը:
Եթէ սիրէի ես հօրս միայն,
Հա՛յր, չէի երբէք ես ամուսնանայ
Քոյրերիս նման:

ԼԻՐ

Սի՞րտդ էլ է միթէ
Խօսքերիդ նման:

ԿՈՐԴԵԼԻԱ

Այո՛, ազնիւ տէ՛ր:

ԼԻՐ

Այսքան դեռ փոքրիկ եւ մանկահասակ
Եւ այսքան անսէ՞ր:

ԿՈՐԴԵԼԻԱ

Ո՛չ. մանկահասակ,
Տէր իմ, բայց՝ անկեղծ:

ԼԻՐ

Թող այդպէս լինի:
Անկեղծութիւնդ լինի քեզ օժիտ:
Թող վկայ լինի լոյսը արեւի,
Հեկատի խորհուրդն ու գիշերը մութ,
Մոլորակների պտոյտը, որ մեզ
Կեանք է պարգեւում եւ տարածում մահ,
Երդւում եմ, ահա, որ այսօրուանից
Զրկում եմ ես քեզ ամէն հայրական
Խնամքից, սիրուց եւ ազգակցական
Ամենայն կապից, եւ այս վայրկեանից
Օտար ես դու ինձ: Վայրենի սկիւթը

Եւ զաւակներին լափող մարդակերն
Աւելի սրտիս կլինեն մօտիկ,
Կգտնեն իմ մէջ գութ, կարեկցութիւն,
Քան դու, իմ նախկին դո՛ւստր անզգայ:

ՔԷՆՏ

Մեր արքա՛յ:

ԼԻՐ

Լռի՛ր, մի՛ մտնիր դու, Քէ՛նտ,
Վիշապի եւ իր կատաղութեան մէջ.
Ես սիրում էի նրան ջերմագին
Եւ յոյս ունէի գտնել հանգիստս
Նրա կաթոգին խնամքների մէջ:
(*Կորդելիային).*
Հեռո՛ւ այստեղից, աչքիս չերեւա՛ս,
Մահից աւելի ճիշտ է, որ այժմ
Ես ետ եմ մղում սրտիցս հայրական
Նրան առընդմիշտ: Կանչեցէ՛ք իսկոյն
Այստեղ ֆրանսիացուն, բերեցէ՛ք այստեղ
Բուրգոնդի դուքսին: Կորնվա՛լ, Ալբանի՛,
Իմ երկու դստեր օժիտների հետ
Վերցրէ՛ք նաեւ դուք մասը երրորդ:
Թող նրա համար հպարտութիւնը,
Որ նա կոչում է պարզախօսութիւն,
Դառնայ ամուսին ե՛ւ փա՛ռք, ե՛ւ օժիտ:
Ես ձեզ եմ յանձնում իշխանութիւնս,
Առաջնութիւնը նաեւ տիտղոսիս
Եւ բոլոր այն մեծ իրաւունքները,
Որ յատուկ է մեր թագաւորութեան:
Իսկ մենք թողնելով մի հարիւր ասպետ,
Որոնց ապրուստը դուք պիտի հոգաք,
Հերթով կմնանք ամէն մէկիդ մօտ:
Մենք մեզ պահում ենք միայն արքայի
Վսեմ անունը եւ տիտղոսները,
Իսկ իշխանութիւն, եկամուտ, օրէնք,

Սիրելի որդի՛ք, ձերն են այժմեանից:
Ի հաստատութիւն մեր այս որոշման՝
Առէ՛ք այս թագը եւ բաժանեցէ՛ք
Երկուսիդ միջեւ:

---

ՔԷՆՏ

Օ՛, վեհափառ Լիր,
Ձեզ յարգել եմ միշտ՝ իբրեւ արքայիս,
Սիրել իբրեւ հայր եւ հնազանդուել,
Իբրեւ իմ տիրոջ, աղօթքներիս մէջ
Միշտ ձեզ եմ դիտել, իբրեւ պաշտպանիս:

ԼԻՐ

Մի՛ կանգնիր լարուած աղեղի առաջ՝
Խուսափի՛ր նետից:

ՔԷՆՏ

Ո՛չ, թող սլանայ,
Թէկուզ սլաքը սրտիս մէջ մտնի:
Քծնող չի եղել Քէնտը երբեւէ
Եւ չի լինի արդ, երբ արգոյ արքան
Քայլեր է անում խելագարային:
Արդ, ի՞նչ ես անում, ծերո՛ւկ, մի՞թէ դու
Կարծում ես, թէ ուր շողոքորթն է իր
Ծլինքը ծռում, կարո՞ղ է լռել
Քո ազնիւ ծառան: Ազնւութիւնը
Պարտաւոր է միշտ լինել պարզախօս,
Անմտութիւն է երբ անում արքան,
Քէնտը չի լռի, երբ արքան՝ Լիրը,
Նուաստանում է, ե՛տ առ վճիռդ.
Քանի դեռ ուշ չէ, հեռատեսութեամբ
Փոխի՛ր հրէշաւոր քո հրամանը.
Երդւում եմ կեանքով, որ դուստրդ կրտսեր
Քիչ չի սիրում քեզ, քան միւսները,
Անսիրտ չեն նոքա, ով չի որոտում
Փքուն խօսքերով:

ԼԻՐ

Լռի՛ր, Քէնտ, եթէ

Սիրում ես կեանքդ:

ՔԷՆՏ

Ես իմ կեանքը միշտ

Պահել եմ քո ճենգ ոսոխների դէմ

Կռուելու համար եւ չեմ վախենում

Կորցնել ես այն, երբ պահանջում է

Քո՛ փրկութիւնը:

ԼԻՐ

Հեռո՛ւ իմ աչքից:

ՔԷՆՏ

Աչքդ բա՛ց, ո՛վ տէր, եւ շո՛ւրջդ նայիր

Պայծառ հայեացքով...

ԼԻՐ

Երդւում եմ, ահա,

Ես Ապոլոնով...

ՔԷՆՏ

Ես էլ եմ ահա

Երդւում նրանով, որ զուր ես երդւում

Դու աստուածներով...

ԼԻՐ

Ստրո՛ւկ, անհաւատ...

Վերցնում է սուրը:

ԱԼԲԱՆԻ ԵՒ ԿՈՐՆՎԱԼ

Խնայեցէ՛ք, տէ՛ր:

ՔԷՆՏ

Ո՛չ, սպանի՛ր ինձ,
Միակ բժշկիդ, եւ վարձը նրա
Տո՛ւր մոլեգնութեան ախտիդ ժանտաժանտ.
Ե՛տ առ նուիրած քո պարգեւները,
Եթէ ո՛չ՝ որքան կարող եմ ես դեռ
Գէթ մի ձայն հանել կոկորդից իմ, միշտ
Կրկնելու եմ, որ սխալ ես անում:

ԼԻՐ

Լռի՛ր խռովարա՛ր, յանուն քո ուխտած
Հպատակութեան՝ ակա՛նջ դիր դու ինձ:
Քանի որ դու արդ ջանքեր թափեցիր
Բեկանել տալ մեր դատավճիռը
(Ինչ որ մենք երբէք չենք կարող ներել),
Քանի որ անչափ քո գոռոզութեամբ
Միջամտեցիր մեր իշխանութեան
Եւ մեր արձակած վճիռի միջեւ
(Ինչ չի հանդուրժի մեր տիտղոսը, ո՛չ),
Ճաշակի՛ր, ապա, մեր զօրութիւնը,
Վարձդ ստացի՛ր, շնորհում ենք քեզ
Մենք հինգ օր միայն, որ այդ հինգ օրում
Նախապատրաստուես աքսորի համար,
Իսկ վեցերորդին ընդմիշտ ազատես
Ներկայութիւնդ մեր պետութիւնից,
Եթէ տասն օր անց լէշդ վտարուած
Գտնուի յանկարծ մեր պետութեան մէջ,
Այդ վայրկեանը հէնց մահ է քեզ համար,
Հեռացի՛ր հիմա. երկինքը վկայ՝
Անդարձ է խօսքս:

ՔԷՆՏ

Մնա՛ս բարով, արքա՛յ,
Երբ կամենում ես այդպէս ընթանալ,
Եւ այսօրուանից ազատութիւնը
Դուրս է այստեղից, աքսորն է այստեղ:

*(Կորդելիային).*
Իսկ դու, մանկամա՛րդ, աստուածները թող
Քեզ պատսպարեն, դու ճիշտ խորհեցիր
Եւ ճիշտ խօսեցիր:
*(Ռեգանին եւ Գոներիլին).*
Թող գործերը ձեր
Լինեն համեմատ ձեր մեծ ճառերին,
Բարի արդիւնքներ թող ծնուեն ձեր այդ
Սիրոյ խօսքերից:
*(Իշխաններին).*
Այսպէս իշխաննե՛ր,
Քէնտը բոլորիդ հրաժեշտ է տալիս,
Ուր էլ նա գնայ, նոյնն է մնալու:

**Ներս են մտնում Գլոստէրը, Ֆրանսիայի թագաւորը, Բուրգոնդի դուքսը եւ սպասաւորներ:**

ԳԼՈՍՏԷՐ
Իմ ազնիւ արքա՛յ, ահա Ֆրանսիայի
Եւ Բուրգոնդիայի իշխաններն եկան:

ԼԻՐ
Իշխա՛ն Բուրգոնդի,
Նախ ձեզ ենք դիմում, որ մրցակից էք
Այս արքայի հետ՝ մեր դստեր համար.
Դուք ի՞նչ փոքրագոյն օժիտ էք ուզում
Իմ դստեր համար, առանց որի դուք
Կդադարէիք ձեր սիրոյ հայցը:

ԲՈՒՐԳՈՆԴ
Ո՛չ աւելի, տէ՛ր, եւ ո՛չ էլ պակաս,
Քան այն, որ ինքներդ առաջարկեցիք:

ԼԻՐ
Գերազնիւ Բուրգո՛նդ, քանի դեռ նա մեր
Սրտին սիրելի եւ հարազատ էր,

Այդ էր նրա գինն, օժիտը նրա,
Բայց արդ ընկել է նրա արժէքը.
Տէ՛ր իմ, ահա նա կանգնած է ձեր դէմ,
Եթէ այդ փոքրիկ, գեղեցիկ մարմինն,
Իմ ատելութեամբ միայն օժտուած,
Եւ ոչինչ աւել, հաճելի է ձեզ,
Առէ՛ք, ձերն է այն:

ԲՈՒՐԳՈՆԴ

Ի՞նչ պատասխանեմ:

ԼԻՐ

Ահա նա, տէ՛ր իմ, այն արատներով,
Ինչ որ նա ունի՝ որբ, անբարեկամ,
Միայն որդեգիր մեր ատելութեան,
Մեր անէծքներով միայն օժտուած
Եւ մեր երդումով մեզ օտարացած,
Ուզո՞ւմ էք նրան, թէ՞ ետ էք կենում:

ԲՈՒՐԳՈՆԴ

Ներող եղէք, տէ՛ր, վեհափառ արքա՛յ,
Այդ պայմաններով ոչ մի ընտրութիւն
Չի կարող լինել:

ԼԻՐ

Թողէ՛ք, ուրեմն,
Քանզի երդւում եմ այն ուժով վերին,
Որ ինձ կեանք տուեց՝ ես ձեզ յայտնեցի
Նրա կայքն ամբողջ:
*(Ֆրանսիայի թագաւորին).*
Եւ դուք, մե՛ծ արքայ,
Չէի կամենայ ես սէրն անարգել՝
Կապելով ձեզ իմ ատած դստեր հետ,
Խնդրում եմ, ապա ձեր սէրը յղէք
Աւելի վսեմ մի արարածի,
Քան մի թշուառի, որին բնութիւնն
Ինքն է ամաչում՝ իրը համարել:

ՖՐԱՆՍԻԱՅԻ ԹԱԳԱՒՈՐ
Զարմանալի է. նա, որ մինչեւ այս,
Արարածն էր ձեր այնքա՛ն սիրելի,
Միակ առարկան ձեր գովեստների
Եւ ձեր ծերութեան միակ սփոփանքն,
Ինչպիսի՞ յանցանք արդեօք կատարեց
Մի ակնթարթում, որ զրկուեց յաւէտ
Այդքան անսահման ձեր շնորհներից:
Անշուշտ, այդ մեղքը պէտք է որ լինի
Խիստ անբնական կամ հրէշաւոր,
Եւ կամ ձեր նախկին սէրը դէպի նա
Եղել է անհիմն... բայց նրա կողմից
Այդպիսի մի բան թոյլ տալու համար
Հարկաւոր է մի այնպիսի հաւատ,
Որ առանց վերին հրաշագործութեան
Դատողութիւնը չի կարող ինձ տալ:

ԿՈՐԴԵԼԻԱ
Ես աղերսում եմ, ձե՛րդ մեծութիւն,
Մի վերջին շնորհ, եթէ իմ մեղքը
Այն է, որ չունեմ ես սահուն արուեստ՝
Մի բան մտածել, բայց այլ բան ասել
(Քանզի իմ բարի կամքը ես միայն
Կատարում եմ միշտ եւ ապա խօսում),
Խնդրում եմ ապա, որ յայտարարէք,
Որ ոչ մի յանցանք կամ սպանութիւն,
Եւ ոչ գարշելի կամ լկտի մի գործ,
Կամ քայլ անպատիւ չի եղել պատճառ
Ինձ՝ ձեր շնորհից զրկելու համար:
Գիտեմ, իմ մեղքը այն է, որ չունեմ
Ես աչք աղերսող կամ քծնող լեզու,
Եւ այդ պատճառով զրկում եմ ահա
Սիրուց հայրական, բայց չեմ ափսոսում,
Որ չունեմ դրանք:

ԼԻՐ

Լաւ էր առաւել,
Դու չլինէիր ծնուած, քան այսքան
Ատել տայիր քեզ:

ՖՐԱՆՍԻԱՅԻ ԹԱԳԱՒՈՐ

Հէնց ա՞յդ է միայն:
Բնական անմեղ ամօթխածութիւն,
Որ խանգարում է յաճախ ասելու
Այն, որ սրտագին ուզում ես ասել.
Ի՞նչ կասէք սրան, իշխա՛ն Բուրգոնդի,
Եթէ ձեր սէրը հեռու է ուրիշ
Նկատումներից եւ հաշիւներից,
Վերցրէ՛ք նրան. իր օժիտն ինքն է:

ԲՈՒՐԳՈՆԴ

Ո՛վ, վեհափառ Լիր, տուէ՛ք ինձ միայն
Այն, որ նախապէս խոստացել էք դուք,
Եւ նրա ձեռքից կբռնեմ իսկոյն
Եւ Բուրգոնդիայի դքսուհի կանեմ:

ԼԻՐ

Ո՛չ, իմ երդումը անդրդուելի է:

ԲՈՒՐԳՈՆԴ

*(Կորդելիային).*

Ափսո՛ս, որ ահա կորցնելով մի հայր՝
Կորցնում էք դուք եւ մի ամուսին:

ԿՈՐԴԵԼԻԱ

Տէր ընդ ձեզ, ո՛վ դուքս, եթէ ձեր սէրը
Հարստանալու հաշիւ է միայն,
Ես էլ ձեր կինը չեմ կարող լինել:

ՖՐԱՆՍԻԱՅԻ ԹԱԳԱՒՈՐ

Չքնա՛ղ Կորդելիա, դու հարուստ ես շատ,

Թէպէտ ե՛ւ լքուած, ե՛ւ աղքատ, բայց դու
Զնաշխարհիկ ես, թէպէտ անարգուած,
Սակայն պաշտելի. ես տէր եմ կանգնում
Քեզ եւ քո բոլոր առաքինութեան:
Թող թոյլ տրուի ինձ ընտրել ինձ համար
Արհամարհուածին, օ՛հ, դուք, աստուածնե՛ր,
Զարմանալի է, որ նրանց անսիրտ
Ե՛ւ սառը, ե՛ւ բիրտ անարգանքներից
Իմ սէրը վառւում եւ բորբոքւում է:
*(Լիրին).*
Ո՛վ արքայ, քո այս դուստրը անօժիտ
Թագուհի է արդ թէ՛ ինձ, թէ՛ չքնաղ
Ֆրանսիայի համար: Բուրգոնդի բոլոր
Դուքսերը ջլոտ անզօր են այլեւս
Գնել ինձանից չգնահատուած
Այս անգին կոյսին:
*(Կորդելիային).*
Կորդե՛լիա, սրանց
Հրաժե՛շտ տուր արդ, թէպէտ դաժան են:
Զրկուելով հիմա այս դաժան տեղից,
Դու գտնելու ես առաւել լաւ տեղ:

ԼԻՐ
Թող քոնը լինի նա այսուհետեւ,
Արքա՛յ Ֆրանսիայի, մենք չունենք այլեւս
Այդպիսի աղջիկ, եւ նրա դէմքը
Էլ չենք տեսնելու: Գնա՛ ուրեմն՝
Առանց մեր սիրոյ, առանց օրհնութեան:
Ե՛կ, Բուրգոնդի դուքս:

**Փողեր: Լիրը եւ Բուրգոնդի դուքսը դուրս են գնում:**

ՖՐԱՆՍԻԱՅԻ ԹԱԳԱՒՈՐ
Դէ, հրաժե՛շտ տուր քոյրերիդ եւս:

ԿՈՐԴԵԼԻԱ
Իմ հօր գոհարնե՛ր, խոնաւ աչքերով,

Հրաժեշտ է ձեզ տալիս Կորդելիան.
Ճանաչում եմ ձեզ, սակայն, իբրեւ քույր,
Խորշում եմ կոչել իրենց անունով
Արատները ձեր: Սիրեցէ՛ք հորս,
Յանձնում եմ նրան ձեր խոստումնալից,
Սիրազեղ կրծքին, բայց, աւա՜ղ, եթէ
Ես վայելէի նրա շնորհը,
Աւելի լաւ տեղ կտայի նրան:
Դէ, մնա՛ք բարով:

ՌԵԳԱՆ
Մի՛ սովորեցնի
Դու մեր պարտքը մեզ:

ԳՈՆԵՐԻԼ
Լաւ է, աշխատի՛ր
Հաճելի լինել քո այդ ամուսնուն,
Որ քեզ ընդունեց ողորմածաբար:
Դու չկամեցար լինել հնազանդ
Եւ արժանի ես, որ քեզ զլացուի
Այն, որ զլացար դու քո հորն անգամ:

ԿՈՐԴԵԼԻԱ
Լաւ... Ժամանակը ի յայտ կբերի,
Ինչ որ խորամանկ սիրտն է թաքցնում
Իր ծալքերի տակ, ով ծածկում է իր
Մոլութիւնները, ամօթը նրան
Ծաղր ու ծանակ է վերջում դարձնում:
Յաջողութի՛ւն ձեզ:

**Դուրս է գնում Ֆրանսիայի թագաւորի հետ:**

ԳՈՆԵՐԻԼ
Քո՛յր, շատ բան ունեմ քեզ ասելու մի բանի մասին, որ շատ սերտ կապ ունի մեզ՝ երկուսիս հետ: Կարծեմ մեր հայրն այս գիշեր հեռանալու է այստեղից:

ՌԵԳԱՆ
Անշուշտ, նա քեզ մօտ է գալու, իսկ միւս ամիս՝ մեզ մօտ:

ԳՈՆԵՐԻԼ
Տեսնում ես, որքան փոփոխական է նրա ծերութիւնը: Մեր տեսածը բաւական է, նա մեր քրոջը միշտ բոլորից աւելի էր սիրում, բայց ի՛նչ անմիտ դատողութեամբ նրան վտարեց. այդ ակներեւ է ամենակոպիտ կերպով:

ՌԵԳԱՆ
Դա նրա ծերութեան թուլութիւնն է, բայց նա երբեք իր արածը լաւ չի հասկացել:

ԳՈՆԵՐԻԼ
Իր կեանքի ամենալաւ եւ ամենաառողջ օրերում նա շատ բարկացկոտ է եղել, ուրեմն մենք նրա ծերութիւնից պէտք է սպասենք ոչ միայն բնածին, խորապէս արմատացած թերութիւններ, այլեւ այն անզուսպ բռնկումները, որ տկար եւ բարկացկոտ ծերութիւնն է բերում իր հետ:

ՌԵԳԱՆ
Մենք նրանից պէտք է սպասենք այնպիսի անակնկալ արարքներ, ինչպէս Քէնտի այսօրուայ աքսորը:

ԳՈՆԵՐԻԼ
Դեռ հրաժեշտի արարողութիւնները չեն կատարուել նրա եւ Ֆրանսիայի թագաւորի միջեւ, մենք պէտք է համերաշխ լինենք իրար հետ: Եթէ մեր հայրը իր այս տրամադրութեամբ որեւէ իշխանութիւն ունենայ, դատարկ հեգնանք կդառնայ նրա այսօրուայ զիջումն ի նպաստ մեզ:

ՌԵԳԱՆ
Այդ մասին կմտածենք:

ԳՈՆԵՐԻԼ
Երկաթը պէտք է տաք-տաք ծեծել:

**Դուրս են գնում:**

## ՏԵՍԱՐԱՆ Բ.

**Գլոստէրի կոմսի ամրոցներից մէկում**
**Մտնում է Էդմոնդը՝ մի նամակ ձեռքին:**

ԷԴՄՈՆԴ

Դո՛ւ ես, բնութի՛ւն, իմ աստուածուհին.
Ես ենթարկւում եմ քո օրէնքներին.
Ի՞նչ միտք՝ յանձնուել սին սովորութեան
Պատուհասներին, անձնատուր լինել
Կենսական անմիտ բծախնդրութեան,
Որ նա զրկէ ինձ իմ իրաւունքից
Լոկ այն պատճառով, որ իմ եղբօրից
Տասներկու կամ թէ տասնչորս լուսին
Ետ եմ մնացել. ի՞նչ ապօրինի,
Երբ անդամներս նոյնքան կայտառ են,
Հոգիս նոյնքան վեհ, տեսքըս՝ բարեձեւ,
Որպէս աշխարհում կարող է լինել
Մի պարկեշտ տիկնոջ իսկական զաւակ:
Ինչո՞ւ են այդպէս ինձ գանակոծում,
Անարգում անվերջ՝ անարգ անունով,
Անուանում ստոր: Ինչո՞ւ է ստոր
Նա, որ բնութեան առոյգ գողութեամբ
Լոյս աշխարհ գալով՝ աւելի եռանդ
Եւ կենսապարար ուժ է ստանում,
Քան ծնուածները տաղտուկ մահճի մէջ,
Ուր ստեղծւում է թանձրամիտների
Մի ամբողջ սերունդ՝ սերուած կէս քնի,
Կէս արթնութեան մէջ... Ուրեմն այսպէս,
Հարազատ Էդգա՛ր, ես պէտք է տիրեմ
Քո կալուածներին: Մեր հօր սէրից
Ապօրէն Էդմոնդն այնքան մաս ունի,
Որքան եւ զաւակն այն օրինաւոր:
Օ՛, ինչ գեղեցիկ բառ՝ «օրինաւոր»...
Լա՛ւ, հարազա՛տս, թէ նամակս այս
Լինի ազդեցիկ եւ հնարս՝ յաջող,

Էդմոնդ ստորը կգերազանցէ
Օրինաւորին... Օ՛, դուք, աստուածնե՛ր,
Զօրաւի՛գ եղէք ապօրէններին...

Մտնում է Գլոստերը:

ԳԼՈՍՏԵՐ
Քէնտը աքսորուի՛,
Ֆրանսիայի արքան մեկնի՛ բարկութեամբ,
Եւ թագաւորը թողնի հեռանայ՝
Իշխանութիւնն իր յանձնած ուրիշի
Եւ ինքը դարձած մի թոշակառու...
Եւ այս բոլորը, մի ակնթարթո՞ւմ...
Ի՞նչ լուր կայ, Էդմո՛նդ:

ԷԴՄՈՆԴ
*(Իբրեւ թէ նամակը թաքցնելով).*
Ոչինչ, տէ՛ր իմ:

ԳԼՈՍՏԵՐ
Ինչո՞ւ ես այդպէս շուտով թաքցնում այդ նամակը:

ԷԴՄՈՆԴ
Ես ոչ մի լուր չեմ իմանում, տէ՛ր իմ:

ԳԼՈՍՏԵՐ
Այդ ի՞նչ թուղթ էր, որ կարդում էիր:

ԷԴՄՈՆԴ
Ոչինչ, տէ՛ր իմ:

ԳԼՈՍՏԵՐ
Ոչի՛նչ, ինչո՞ւ ուրեմն այդքան սարսափած դրեցիր գրպանդ: Ոչինչը կարիք չունի այդպէս շտապով թաքնուելու: Տո՛ւր, տեսնեմ, տո՛ւր, եթէ ոչինչ լինի՝ ես կարիք չեմ զգայ ակնոցի:

ԷԴՄՈՆԴ

Աղաչում եմ, տէ՛ր իմ, ներեցէ՛ք ինձ, սա մի նամակ է, որ եղբայրս է ինձ գրել, եւ ես դեռ ամբողջը չեմ կարդացել: Բայց որքան որ կարդացել եմ՝ հարմար չեմ գտնում, որ դուք տեսնէք:

ԳԼՈՍՏԵՐ

Տո՛ւր ինձ այդ նամակը, պարո՛ն:

ԷԴՄՈՆԴ

Տամ էլ՝ վատ է, չտամ էլ՝ բովանդակութիւնը, որքան ես հասկացայ, վիրաւորական է:

ԳԼՈՍՏԵՐ

Տեսնեմ, տեսնեմ:

ԷԴՄՈՆԴ

Իբրեւ արդարացում եղբօրս՝ յոյս ունեմ, որ նա այս նամակը գրել է իմ ազնւութիւնը փորձելու համար:

ԳԼՈՍՏԵՐ

*(Կարդում է).*

«Այնպիսի հասկացողութիւնները, ինչպիսին է ակնածանքը դէպի ծերութիւնը, դառնացնում են մեր կեանքի ամենալաւ օրերը եւ զրկում են մեզ մեր բախտից, մինչեւ որ ծերութիւնը մեզ այլեւս անընդունակ է դարձնում վայելք զգալու նրանից: Յիմար եւ վնասակար տխմարութիւն է ենթարկուել զառամեալ բռնակալին, որն իշխում է ոչ թէ իր կարողութեամբ, այլ միայն այն պատճառով, որ մենք հանդուրժում ենք նրան: Ե՛կ ինձ մօտ, որպէսզի միասին մանրամասն խօսենք: Եթէ մեր հայրն այնքան քնէր, մինչեւ ես նրան կարթնացնէի, դու կստանայիր ընդմիշտ նրա կարողութեան կէսը եւ կդառնայիր քո եղբօր սիրելին:

*Էդգար»:*

Ի՞նչ է սա, դաւադրութի՞ւն... «քնէր, մինչեւ ես նրան կարթնացնէի... դու կստանայիր ընդմիշտ նրա կարողութեան

կէսը...» Իմ որդի Էդգա՞րը. նրա ձեռքն այսպիսի բան գրէ՛... նրա սիրտը եւ ուղեղը նման բան յղանա՛ն... Ե՞րբ ստացար այս նամակը, ո՞վ բերեց:

ԷԴՄՈՆԴ

Չեն բերել, տէ՛ր իմ, հնարքն էլ հէնց այս է: Ես այն գտայ իմ առանձնասենեակի պատուհանի առջեւ:

ԳԼՈՍՏԵՐ

Ճանաչո՞ւմ ես, որ գիրը եղբորդ է:

ԷԴՄՈՆԴ

Եթէ բովանդակութիւնը հաճելի լինէր, ես կարող էի երդուել, որ նրանն է, բայց քանի որ այսպիսին է, ես կուզէի մտածել, որ նրանը չէ:

ԳԼՈՍՏԵՐ

Նրանն է:

ԷԴՄՈՆԴ

Նրա ձեռքն է, տէ՛ր իմ, բայց յոյս ունեմ, որ նրա սիրտը գրածի մէջ չէ:

ԳԼՈՍՏԵՐ

Մինչեւ հիմա այդ մասին երբեւիցէ քեզ հետ խօսք չի՞ բացել:

ԷԴՄՈՆԴ

Երբէք, տէ՛ր իմ, բայց յաճախ նա պնդել է ինձ մօտ, որ երբ որդիները չափահաս են դառնում, եւ հայրերն սկսում են զառամել, հայրը պէտք է լինի որդու խնամքի տակ, իսկ որդին պէտք է կառավարէ նրա ունեցուածքը:

ԳԼՈՍՏԵՐ

Օ՛, սրիկա՛յ, սրիկա՛յ... հէնց իր այդ միտքն է այս նամակում... գարշելի՛ սրիկայ, հրէշաւոր, ատելի, վայրենի՛ սրի-

կայ... աւելի վատթար, քան գազանային... գարշելի՛ սրիկայ... ո՞ւր է նա...

ԷԴՄՈՆԴ

Լաւ չգիտեմ, տէ՛ր իմ: Եթէ բարեհաճէք ժամանակաւորապէս զսպել ձեր զայրոյթը իմ եղբօր դէմ, մինչեւ կարողանաք աւելի ցայտուն ապացոյց կորզել նրանից՝ իր մտքերի մասին, դա աւելի ճիշտ ընթացք կլինի: Այնինչ, եթէ բռնանաք նրա վրայ եւ սխալուէք նրա դիտումներում, դա մեծ հարուած կլինէր ձեր պատուին, եւ դուք կկործանէիք նրա հնազանդութեան հիմը: Ես համարձակւում եմ կեանքս գրաւ դնել, որ նա այս գրել է նրա համար միայն, որ փորձէ իմ սիրոյ չափը դէպի ձերդ ազնւութիւնը եւ ոչ թէ որեւէ չար նպատակով:

ԳԼՈՍՏԵՐ

Կարծո՞ւմ ես:

ԷԴՄՈՆԴ

Եթէ ձերդ ազնւութիւնը հարմար գտնի՝ ես ձեզ կթաքցնեմ մի այնպիսի տեղ, որ դուք ձեր ականջով լսէք մեր խօսակցութիւնն այդ մասին եւ բաւարարուէք: Եւ այդ ոչ աւելի ուշ, քան այս գիշեր:

ԳԼՈՍՏԵՐ

Նա չի կարող մի այդպիսի հրէշ լինել:

ԷԴՄՈՆԴ

Իհարկէ, չի կարող լինել:

ԳԼՈՍՏԵՐ

Դէպի իր հա՞յրը, որ նրան սիրում է այնքան անհուն եւ անքուշ սիրով... Երկի՛նք եւ երկի՛ր... Էդմո՛նդ, գտի՛ր նրան, թո՛յլ տուր թափանցեմ նրա գաղտնիքի մէջ. գործը կազմակերպի՛ր ըստ քո խոհեմութեան. ես պէտք է մի կողմ դնեմ իմ հայրական գութը՝ հարկ եղած վճռականութիւնը ցոյց տալու համար:

ԷԴՄՈՆԴ

Ես իսկոյն կգնամ, կորոնեմ նրան, տէ՛ր իմ, գործը կկատարեմ ըստ իմ կարողութեան եւ ձեզ կտեղեկացնեմ:

ԳԼՈՍՏԵՐ

Արեւի եւ լուսնի վերջին խաւարումները ոչ մի լաւ բան չեն գուշակում մեզ համար: Թող իմաստունները դատեն, ինչպէս կուզեն, բայց բնութեան օրէնքները խախտում են ամենուրեք, սէրը սառչում է, բարեկամութիւնը՝ թուլանում, եղբայրը եղբօր դէմ է ելնում, քաղաքներում՝ ապստամբութիւններ, գիւղերում՝ պառակտումներ, պալատներում՝ դաւաճանութիւն, հօր եւ որդու՛ միջեւ՝ կապի խորտակում: Իմ որդին եւս այս գուշակութեան՞ազդեցութեան տակ է. ահա՛ որդին հօր դէմ, թագաւորը շեղւում է բնական ընթացքից, ահա՛ հայրը որդու դէմ: Մեր լաւ օրերն անցել են արդէն. մեքենայութիւններ, խարդախութիւն, մատնութիւն եւ ամէն տեսակի կործանիչ խռովութիւններ հալածում են մեզ անդադար, մինչեւ մեր գերեզմանը: Գտի՛ր այդ թշուառականին, Էդմո՛նդ, դու բան չես կորցնի, զգուշութեա՛մբ վարուիր... Իսկ այն ազնիւ եւ առաքինի Քէնտը աքսորուա՛ծ, եւ նրա յանցանքը ազնուութիւնն է... զարմանալի՛ է, զարմանալի...

Դուրս է գնում:

ԷԴՄՈՆԴ

Այսպէս է աշխարհի զարմանալի տխմարութիւնը, երբ մեր բախտը խախտում է, եւ այն էլ յաճախ մեր սեփական ընթացքի պատճառով, մենք մեր դժբախտութիւնները սիրում ենք բարդել արեւի, լուսնի եւ աստղերի վրայ. կարծես թէ ճակատագրի ուժով է, որ մենք սրիկաներ ենք, տխմարներ ենք երկնային հրամանով. թշուառականներ, գողեր, դաւաճաններ՝ մոլորակների ազդեցութեամբ, հարբեցողներ, ստախօսներ, շնացողներ՝ լուսնի ազդեցութեամբ մեր էութեան վրայ: Եւ բոլոր յանցանքները, որ գործում ենք, աստուածային դրդմամբ ենք գործում: Սքանչելի պատրուակ բոզարած մարդու համար՝ բարդել իր վաւաշոտ հակումները աստղերի

վզին: Իմ հայրը մերձեցաւ իմ մօրը Վիշապի պոչի տակ, եւ իմ ծնունդը տեղի ունեցաւ Մեծ արջի ներքոյ, եւ հետեւանքն այն է, որ ես գռեհիկ եմ եւ լկտի: Ո՛չ, ես ինչ որ եմ՝ հէնց այն էլ կլինէի, եթէ անգամ երկնակամարի ամենակուսական աստղը շողշողած լինէր իմ ապօրինի սերման վրայ... Էդգա՞րը...

Մտնում է Էդգարը:

Ճիշտ ժամանակին է գալիս, ինչպէս հանգոյցի լուծումը հին կատակերգութիւններում: Ես պէտք է խաղամ մելամաղձոտի դեր եւ հառաչեմ, ինչպէս Տոմը Բէդլամում:

*(Բարձրաձայն).* Օ՛հ, այս խաւարումները գուշակում են մեզ մեծ պառակտումներ... Ֆա, սոլ, լա, մի...

ԷԴԳԱՐ

Ի՞նչ լուր, Էդմո՛նդ, այդ ի՞նչ մտքերի մէջ ես այդպէս խորասուզուել:

ԷԴՄՈՆԴ

Ես մտածում եմ անցեալ օրը կարդացածս մի գուշակութեան մասին, թէ ինչ է լինելու այս խաւարումների հետեւանքը:

ԷԴԳԱՐ

Մի՞թէ դու զբաղւում ես դրանով:

ԷԴՄՈՆԴ

Հաւատացնում եմ, որ այնտեղ յիշուած գուշակութեան արդիւնքներն սկսել են դժբախտաբար իրականանալ՝ անբնական յարաբերութիւններ հայրերի եւ զաւակների միջեւ, մահ, սով, հին բարեկամութիւնների պառակտում, խռովութիւններ պետութեան մէջ, սպառնալիքներ եւ անէծքներ թագաւորների եւ ազնուականների հասցէին, անտեղի կասկածանքներ, բարեկամների վտարում, զօրքերի խառնաշփոթութիւն, ամուսնական բեկանումներ եւ չգիտեմ էլ ինչ...

ԷԴԳԱՐ

Որքա՞ն ժամանակ է, որ աստղագիտութեան ուսանող ես դարձել:

ԷԴՄՈՆԴ

Լա՛ւ, այդ թողնենք: Ե՞րբ ես տեսել վերջին անգամ հօրս:

ԷԴԳԱՐ

Ե՞րբ, անցած գիշեր:

ԷԴՄՈՆԴ

Հետը խօսեցի՞ր:

ԷԴԳԱՐ

Այո, ամբողջ երկու ժամ:

ԷԴՄՈՆԴ

Սիրո՞վ բաժանուեցիք իրարից, ոչ մի դժգոհութիւն չնկատեցի՞ր նրանում՝ խօսքից կամ դէմքից:

ԷԴԳԱՐ

Ամենեւին:

ԷԴՄՈՆԴ

Լա՛ւ մտաբերիր, թէ ինչով պէտք է նրան վիրաւորած լինես, եւ աղաչում եմ, խո՛յս տուր միաժամանակ նրա ներկայութիւնից, մինչեւ որ նրա դժգոհութեան բռնկումները անցնեն: Այս վայրկեանիս նա այնքան բարկացած է, որ մահդ անգամ չի ամոքի նրան:

ԷԴԳԱՐ

Որեւէ սրիկայ պէտք է որ ինձ զրպարտած լինի:

ԷԴՄՈՆԴ

Ես էլ դրանից եմ վախենում: Խնդրում եմ՝ դու քեզ համբերութեամբ հեռո՛ւ պահիր, մինչեւ որ զայրոյթի սաստկութիւնը

անցնի: Եւ ինչպէս ասացի, արի՛ ինձ հետ, առանձնացի՛ր իմ բնակարանում: Ես քեզ մի այնպիսի տեղ կտանեմ, որ դու լսես մեր հօր խօսակցութիւնը: Ե՛կ, խնդրեմ, ահա իմ բանալին, երբ դուրս գալ ուզենաս՝ զինուա՛ծ դուրս եկ:

ԷԴԳԱՐ

Զինուա՞ծ:

ԷԴՄՈՆԴ

Եղբա՛յր, ես քեզ բարի խորհուրդ եմ տալիս՝ զինուա՛ծ շրջիր: Ես ազնիւ մարդ չեմ, եթէ քո նկատմամբ չար դիտաւորութիւններ չկան: Ես քեզ պատմեցի, ինչ որ լսել ու տեսել եմ, այն էլ շատ մեղմացրած, շատ հեռու՝ իրականութեան սոսկալի պատկերից: Աղաչում եմ, գնա՛:

ԷԴԳԱՐ

Շուտով լուր կտա՞ս ինձ:

ԷԴՄՈՆԴ

Ես այս գործում քեզ եմ ծառայում:

**Էդգարը դուրս է գնում:**

Մի բարեմիտ հայր, մի ազնիւ եղբայր,
Որի սիրտն, հոգին այնքան հեռու են
Չարիք գործելուց, որ չի էլ զգում,
Թէ որքան հեշտ են իմ հնարքները
Այսպիսի տխմար ազնութեան դէմ:
Ես գործս գիտեմ. եթէ ծնունդով
Անհնարին է կալուած ստանալ,
Կստանամ ես իմ խորամանկութեամբ:
Ամէն մի միջոց լաւ է ինձ համար,
Թէ հասցնում է իմ նպատակին:

**Դուրս է գնում:**

## ՏԵՍԱՐԱՆ Գ.

**Ալբանի դուքսի պալատը**
**Մտնում են Գոներիլը եւ Օսվալդը:**

ԳՈՆԵՐԻԼ

Մի՞շտ է, որ հայրս ծեծել է իմ թիկնապահին այն պատճառով, որ նա անպատուել է նրա պալատական խեղկատակին:

ՕՍՎԱԼԴ

Այո՛, տիկի՛ն:

ԳՈՆԵՐԻԼ

Գիշեր ու ցերեկ անարգում է ինձ
Եւ բարկանում է իւրաքանչիւր ժամ՝
Գործելով մի բիրտ, անվայել յանցանք,
Որ մեզ բոլորիս վիրաւորում է:
Իր ասպետները խիստ խռովարար
Մարդիկ են դառնում, ինքն էլ շարունակ,
Ամէն մի չնչին պատճառի համար
Պարսաւում է մեզ: Երբ որսից դառնայ,
Հետը չեմ խօսի, դուք էլ ասացէ՛ք,
Որ ես հիւանդ եմ: Եւ շատ լաւ կանէք,
Որ չծառայէք առաջուայ նման,
Իսկ պատասխանը ես ինքս կտամ:

ՕՍՎԱԼԴ

Նա եկաւ, տիկի՛ն, լսում է ձայնը:

ԳՈՆԵՐԻԼ

Որքան կարող էք, անհո՛գ ձեւացէ՛ք,
Թէ՛ դու եւ թէ՛ քո ընկերները: Նա,
Եթէ բարկանայ, շատ լաւ կլինի:
Թէ չի հաւանում, թող գնայ հիմա
Իմ քրոջ տունը. քոյրս ինձ հետ է
Եւ չի հանդուրժի, որ իշխեն վրան:

Զառամեա՛լ ծերուկ, որ կամենում է
Դեռեւս վարել մի իշխանութիւն,
Որ ինքն է ուրիշ ձեռքերի յանձնել։
Օ՛հ, կեանքս վկայ, զառամեալները
Կարծես թէ կրկին մանուկ են դառնում։
Պէտք է նրանց հետ խստութեամբ վարուել,
Երբ քնքշութիւնը օգուտ չի բերում,
Ցիշի՛ր ասածս։

ՕՍՎԱԼԴ
Շատ լաւ, տիրուհի՛։

ԳՈՆԵՐԻԼ
Ասպետների հետ եւս վարուեցէք,
Որքան կարող էք, սառն ու անտարբեր.
Ինչ լինելու է, թող լինի շուտով։
Ընկերներիդ էլ նո՛յնը պատուիրիր։
Ես ցանկանում եմ մի առիթ գտնել
Եւ պէտք է գտնեմ, որ լեզուս բանամ։
Իսկոյն քրոջս մի նամակ գրեմ,
Որպէսզի նա էլ ինձ նման վարուի։
Ճաշը պատրաստէ՛ք։

**Դուրս է գնում։**

## ՏԵՍԱՐԱՆ Դ.

**Մի դահլիճ՝ նոյն պալատում**
**Մտնում է Քէնտը՝ ծպտեալ։**

ՔԷՆՏ
Թէ կարողանամ իմ ձայնն էլ փոխել
Եւ խօսել օտար առոգանութեամբ,
Գուցէ իմ բարի նպատակն հասնի
Այն յաջողութեան, որի պատճառով

էլ այսքան լաւ երեւաս, ես քեզանից էլ չեմ բաժանուի: Ու՞ր է իմ անպիտան խեղկատակը: Գնա՛, իմ խեղկատակին կանչի՛ր այստեղ:

**Մտնում է Օսվալդը:**

Հէ՛յ, ո՞վ ես, ա՛յ մարդ, որտե՞ղ է աղջիկս:

ՕՍՎԱԼԴ

Ներեցէ՛ք...

**Դուրս է գնում:**

ԼԻՐ

Ի՞նչ է ասում այդ մարդը, ե՛տ կանչէք այդ տխմարին. ո՞ւր է ծաղրածուն: Հո՛, կարծես ամբողջ աշխարհը քուն է մտել: Ի՞նչ է, ո՞ւր է այդ շունը:

ԱՍՊԵՏ

Տէ՛ր իմ, նա ասում է, որ ձեր դուստրն առողջ չէ:

ԼԻՐ

Ինչո՞ւ այդ թշուառականը չվերադարձաւ, երբ ես նրան կանչեցի:

ԱՍՊԵՏ

Տէ՛ր իմ, նա ինձ ուղղակի պատասխանեց, որ չի ուզում գալ:

ԼԻՐ

Չի՞ ուզում:

ԱՍՊԵՏ

Տէ՛ր իմ, չգիտեմ ինչ է տեղի ունենում: Բայց ինձ թւում է, որ ձերդ մեծութեան հետ այժմ այնպէս յարգալից չեն վարւում, ինչպէս առաջ: Թէ՛ հասարակ ծառայողները, թէ՛ դուքսը եւ թէ՛ ձեր դուստրը նոյնպէս քաղաքավարի չեն, ինչպէս առաջ էին:

ԼԻՐ

Հա՞, կարծո՞ւմ ես:

ԱՍՊԵՏ

Աղերսում եմ, տէ՛ր իմ, ներեցէ՛ք ինձ, եթէ սխալւում եմ, սակայն ես չեմ կարող լուռ մնալ, երբ տեսնում եմ, որ ձերդ մեծութիւնը արհամարհւում է:

ԼԻՐ

Դու ինձ նկատել ես տալիս այն, ինչ ես ինքս էլ դիտել եմ, վերջերս ես նկատել եմ մի տեսակ անուշադիր վերաբերմունք դէպի ինձ, բայց դա աւելի վերագրել եմ իմ սեփական դժուարահաճութեան, քան որոշ դիտաւորութեան կամ չար մտքի: Պէտք է աւելի ուշադրութեամբ զննել... Բայց ո՞ւր է իմ խեղկատակը. երկու օր է նրան չեմ տեսել:

ԱՍՊԵՏ

Տէ՛ր իմ, մեր կրտսեր տիրուհու Ֆրանսիա մեկնելու օրից խեղկատակը շատ է տխրում:

ԼԻՐ

Մի՛ խօսի՛ր այդ մասին, ես ինքս էլ եմ տեսնում: Գնա՛ եւ ասա՛ դստերս, որ ուզում եմ խօսել նրա հետ: Դու էլ գնա՛ եւ խեղկատակիս ասա՛, գայ այստեղ:

**Գալիս է Օսվալդը:**

Հէ՛յ, դո՛ւ, պարո՛ն, այստե՛ղ ե՛կ, տեսնեմ. ես ո՞վ եմ, ա՛յ մարդ:

ՕՍՎԱԼԴ

Իմ տիրուհու հայրը:

ԼԻՐ

Իմ տիրուհու հա՞յրը, հա՞, տիրոջ սրիկայ ծառա՛յ, շա՛ն որդի, ստրո՛ւկ, շո՛ւն:

ՕՍՎԱԼԴ

Ներեցէ՛ք, տէ՛ր իմ, ես ձեր ասածներից ոչ մէկը չեմ:

ԼԻՐ

Դեռ համարձակո՞ւմ ես հակաճառել ինձ, շո՛ւն:

**Խփում է նրան:**

ՕՍՎԱԼԴ

Ես թո՛յլ չե՛մ տալ, որ ինձ խփեք, պարո՛ն:

ՔԵՆՏ

*(Մի աքացիով նրան գետին է գլորում).* Ոչ էլ գետին գլորել, կեղտոտ խեղկատա՛կ:

ԼԻՐ

Շնորհակալ եմ քեզանից, ո՛վ մարդ, դու ինձ լաւ ծառայեցիր, եւ ես քեզ կսիրեմ:

ՔԵՆՏ

Դէ վե՛ր կաց, կորի՛ր այստեղից, դո՛ւրս. ես քեզ կսովորեցնեմ տարբերել մարդկանց: Դո՛ւրս այստեղից, եթէ չես ուզում մի անգամ էլ երկարուել հասակովդ մէկ: Դո՛ւրս կորիր, եթէ խելքդ տեղն է դեռ, դո՛ւրս:

ԼԻՐ

Դէ, շնորհակալ եմ, իմ հաւատարիմ ծառա՛յ. ահա ծառայութեանդ համար մի կանխավճար: *(Քէնտին փող է տալիս):*

**Մտնում է խեղկատակը:**

ԽԵՂԿԱՏԱԿ

Թող ես էլ վարձատրեմ դրան, ա՛ռ քեզ իմ խեղկատակի գլխարկը:

ԼԻՐ

Որտե՞ղ ես, չարաճճի՛, ինչպէ՞ս ես:

ԽԵՂԿԱՏԱԿ

*(Քէնտին).* Լաւ կանես, վերցնես գլխարկս, ա՛յ մարդ:

ՔԷՆՏ

Ինչի՞ համար, խե՛նթ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Նրա համար, որ պաշտպան ես կանգնել մի շնորհազուրկ մարդու: Եթէ դու չես կարող ժպտալ քամու փչած ուղղութեամբ, շուտով հարբուխ կստանաս: Դէ, վերցրո՛ւ գլխարկս: Տեսնո՞ւմ ես, այս խեղկատակը իր աղջիկներից երկուսին աքսորել է, իսկ երրորդին տուել է իր օրհնութիւնը՝ առանց այդ իմանալու: Եթէ դու ուզում ես հետեւել նրան, խեղկատակի գլխարկս պէտք է անպայման գլխիդ դնես: Ինչպէ՞ս ես, սիրելի քեռի՛: Երանի՜ թէ երկու գլխարկ ունենայի եւ երկու դուստր:

ԼԻՐ

Ինչո՞ւ, ա՛յ տղայ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Որովհետեւ եթէ նրանց տայի բոլոր կալուածներս՝ գոնէ գլխարկներս ինձ կմնային:

*(Իր գլխարկը Լիրին տալով):* Ահա քեզ իմը, մյուսն էլ աղջիկների՛ցդ մուրա:

ԼԻՐ

Զգո՛յշ, սիրելիս, տեսնո՞ւմ ես մտրակը...

ԽԵՂԿԱՏԱԿ

Ճշմարտութիւնը շուն է, որ պէտք է շնանոցում մնայ, նրան մտրակելով սենեակից կվռնդեն, այնինչ ազնուազարմ բարակը կարող է նետուել վառարանի մօտ եւ վատ հոտ հանել:

ԼԻՐ

Ի՜նչ դառը թոյն ինձ համար:

ԽԵՂԿԱՏԱԿ

*(Քէնտին).* Լսի՛ր, բարեկա՛մ, քեզ մի լաւ խօսք սովորեցնեմ:

ՔԷՆՏ

Ասա՛:

ԽԵՂԿԱՏԱԿ

Լա՛ւ լսիր, քեռի՛։
Քի՛չ ցոյց տուր, շատ ունեցի՛ր,
Քի՛չ խօսիր, շատ իմացի՛ր,
Ունեցածդ փոխ մի՛ տա,
Շա՛տ լսիր, քի՛չ հաւատա,
Շա՛տ ձի նստիր, քի՛չ քայլիր,
Շա՛տ շահիր, քի՛չ շռայլիր,
Քի՛չ խմիր ու քէ՛ֆ արա,
Չծիծաղեն քեզ վրայ,
Եւ կշահես դրանից,
Երկու տասը՝ քսանից։

ՔԷՆՏ

Դա ոչինչ է, խեղկատա՛կ։

ԽԵՂԿԱՏԱԿ

Ուրեմն նման է անվարձ փաստաբանի խօսքին. դու ինձ ոչինչ չես վճարել դրա համար։ Իսկ ի՞նչ ես կարծում, ոչնչից կարելի՞ է մի բան շինել, քեռի՛։

ԼԻՐ

Անշուշտ, ո՛չ։ Ոչնչից ոչինչ միայն կարելի է ստանալ։

ԽԵՂԿԱՏԱԿ

*(Քէնտին)*. Խնդրեմ, ասա՛ սրան, որ իր կալուածների հասոյթն էլ հէնց այդքան է։ Նա խեղկատակի խօսքին չի ուզում հաւատալ։

ԼԻՐ

Դառն հանաք է։

ԽԵՂԿԱՏԱԿ

Ով որ խորհուրդ տուեց քեզ՝
Կալուածներդ նուիրես,
Նա դառն հանաք է արել
Եւ ծաղրածու է դառել…

ԼԻՐ

Ինձ է՞լ ես դու ծաղրածու համարում, բարեկա՛մ։

ԽԵՂԿԱՏԱԿ

Ի՞նչ է մնում անել, երբ բոլոր տիտղոսներդ բաժանեցիր ուրիշներին եւ քեզ թողիր միայն մի բնածին տիտղոս։

ՔԵՆՏ

Ամբողջովին յիմարութիւն չի ասածը, տէ՛ր իմ։

ԽԵՂԿԱՏԱԿ

Ո՛չ, երդւում եմ, որ լորդերն ու մեծատոհմները չեն ուզում յիմարութիւնն ամբողջովին ինձ թողնել, էլ բաժին չէր մնայ նրանց։ Դեռ տիկիններն էլ կան, որ չեն թոյլ տայ ինձ խենթութեան մենաշնորհ ունենալ, իրենք էլ են ուզում մաս ունենալ։ Տո՛ւր ինձ մի ձու, քեռի՛, եւ ես քեզ կտամ երկու թագ։

ԼԻՐ

Այդ ի՞նչ թագեր են դրանք։

ԽԵՂԿԱՏԱԿ

Ի՞նչ. երբ ձուն մէջտեղից կիսեմ եւ միջուկն ուտեմ, ձուի կեղեւից երկու թագ կմնայ։ Երբ դու քո թագը մէջտեղից կիսեցիր եւ երկու մասն էլ նուիրեցիր, նշանակում է քո սեփական մէջքով էշին շալակած անցկացրիր ցեխից։ Երբ ոսկի թագդ ուրիշներին տուիր՝ շատ քիչ խելք մնաց ճաղատ թագիդ մէջ։ Եթէ ես այս ասում եմ իբր յիմար, թող ծեծուի նա, ով իմ ասածը ճիշտ է համարում։ *(Երգելով)*.

Խենթի համար տարին դժուար է,
Երբ ամէն խելօք այժմ յիմար է.
Չգիտեն խելքը ինչպէս գործածել.
Նրանք խենթերի կապիկն են դարձել։

ԼԻՐ

Այդ ո՞ր օրուանից է, որ այսքան երգ ես սովորել, տղա՛յ։

ԽԵՂԿԱՏԱԿ

Այն օրուանից, քեռի՛, երբ դու աղջիկներիդ մայր դարձրիր: Այն օրուանից, երբ մտրակը նրանց ձեռքը տուիր եւ վարտիքդ վար քաշեցիր: *(Երգելով).*

Ցնծութիւնից նրանք լացին,
Իսկ ես վշտից երգեցի,
Որ մի այդքան խելացի
Ցիմարների շարքն է
Անցնում բառացի...

Խնդրում եմ, քեռի՛, մի ուսուցիչ վարձի՛ր, որ քո խեղկատակին սուտ խօսել սովորեցնի. ես մեծ ցանկութիւն ունեմ ստախօսութիւն սովորելու:

ԼԻՐ

Բայց եթէ սուտ խօսես, մտրակ կուտես:

ԽԵՂԿԱՏԱԿ

Զարմանում եմ, որ դու եւ աղջիկներդ ազգական էք: Նրանք ինձ ուզում են ծեծել ճշմարտութեան համար, իսկ դու՝ ստախօսութեան: Երբեմն էլ ինձ ծեծում են լուռ մնալու համար: Ինչ լինէի-լինէի, գոնէ խեղկատակ չլինէի: Բայց եւ այնպէս ես չէի ուզի քո տեղը լինել, քեռի՛: Դու խելքդ միջից կիսեցիր եւ մէջը ոչինչ չթողիր: Ահա կէսերից մէկը գալիս է:

**Մտնում է Գոներիլը:**

ԼԻՐ

Ինչպէ՞ս ես, աղջի՛կս, ինչո՞ւ ես ճակատդ կապել: Ինձ թւում է, որ դու վերջերս խոժոռ ես:

ԽԵՂԿԱՏԱԿ

Քո գործն այն ժամանակ էր լաւ, երբ կարիք չունէիր հոգալու նրա դէմքի արտայայտութեան մասին, իսկ այժմ դու մի զրօ ես՝ առանց թուանշանի: Ես քեզանից աւելի լաւ եմ, ես գոնէ խեղկատակ եմ, իսկ դու՝ ոչինչ:

*(Գոներիլին).* Երդւում եմ արեւովս, պէտք է լեզուս զսպեմ՝ դէմքդ այդպէս է հրամայում:

Ով որ փշրանք չպահի,
Կամ չոր հացից ձանձրանայ,
Կգայ մի օր, որ նրանց
Անգամ կարօտ կմնայ:
*(Լիրին ցոյց տալով).*
Ահա քեզ մի փուչ սիսեռի կլեպ:

ԳՈՆԵՐԻԼ

Ոչ միայն, տէ՛ր իմ, ձեր խեղկատակը,
Այլ ամբարտաւան ձեր շքախմբից
Իւրաքանչիւր ոք՝ ամէն մի րոպէ
Կռիւ է սարքում, ե՛ւ վէճ, ե՛ւ աղմուկ,
Ե՛ւ անտանելի խռովութիւններ:
Կարծում էի, տէ՛ր, որ յայտնեմ երբ ձեզ՝
Դուք այդ ամէնին վերջ կտաք իսկոյն.
Բայց այն ամէնից ինչ վերջերս դուք
Ինքներդ խօսել կամ կատարել էք,
Վախենում եմ, որ այդ ամէնը ձեր
Կամքով է արւում եւ թոյլտւութեամբ:
Եթէ ճիշտ է այդ՝ թող վիրաւորանք
Չթուայ այս ձեզ. ինքներս հիմա
Վերջ տալ կջանանք դրանց շտապով:
Այս միջոցները, որոնց նպատակն
Անդորրութիւնն է պետութեան կեանքի,
Գուցէ ձեր աչքին նախատինք թուան
Եւ այլ դէպքերում ամօթալի են,
Բայց այժմ հարկն է ստիպում դիմել
Նախազգուշութեան:

ԽԵՂԿԱՏԱԿ

Տեսնո՞ւմ ես, քեռի՛,
Բարի ծիտն այնքան կկուին պահեց,
Որ կկուն նրա գլուխը կծեց:
Այսպէս ճրագը հանգաւ, եւ մենք մնացինք խաւարում:

ԼԻՐ

Մեր դո՞ւստրն ես դու:

ԳՈՆԵՐԻԼ

Բաւական է, տէ՛ր,
Ես ցանկանում եմ, որ դուք վերջապէս
Դիմելով առողջ բանականութեան,
Որ ձեր մէջ դեռ կայ, վերջ տաք անտեղի
Այս արարքներին, որոնք վերջերս
Ձեզ շեղել են ձեր նախկին ընթացքից:

ԽԵՂԿԱՏԱԿ

Էշն էլ կարող է իմանալ, որ երբեմն պատահում է, որ կառքն է ձիուն քշում:

ԼԻՐ

Կա՞յ արդեօք այստեղ ինձ ճանաչող մարդ.
Ո՛չ, սա Լիրը չէ, այսպէ՞ս էր միթէ
Լիրը ընթանում, այսպէ՞ս էր խօսում.
Ո՞ւր են աչքերս:
Կա՛մ նրա խելքը տխմարանում է,
Կա՛մ մթագնել է դատողութիւնը:
Հը՞, արթո՞ւն է նա... Ո՛չ, անհնար է,
Ո՞վ կարող է ինձ ասել, թէ ո՞վ եմ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Լիրի ստուերը:

ԼԻՐ

Ուզում եմ իմանալ, որովհետեւ իմ արքայական դիտողութիւնները, խելքը եւ դատողութիւնը կարող են խաբել ինձ եւ կարծել տալ, որ դուստրեր ունեմ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Որոնք կամենում են ձեզ դարձնել մի հնազանդ հայր:

ԼԻՐ

Ձեր անունն ի՞նչ է, գեղեցի՛կ տիկին:

ԳՈՆԵՐԻԼ

Ձեր այս զարմանքն էլ, տէ՛ր իմ, նման է
Ձեր այդ նորահաս անհեթեթութեանց.
Աղերսում եմ ձեզ, որ լաւ հասկանաք
Իմ ասածները, դուք՝ լինելով ծեր
Եւ պատկառելի՝ նաեւ խելացի
Պիտի լինէիք: Դուք այստեղ ունէք
Հարիւր թիկնապահ, որոնք բոլորն էլ
Այնքան են յանդուգն ու խռովարար,
Որ դարձրել են մեր արքունիքը
Իրենց բարքերի ապականութեամբ
Մի անկարգ պանդոկ: Որկրամոլութիւնն
Ու լրբութիւնը դարձնում են այն
Աւելի մի պիղծ գինետան նման,
Քան արքունիքի: Մոլութիւնն անգամ
Մի անմիջական ելք է պահանջում:
Լսեցէ՛ք ուրեմն իմ աղաչանքը,
Եւ առաջարկս եթէ չընդունէք՝
Ստիպուած պիտի դիմենք բռնութեան:
Մի քիչ կրճատէ՛ք ձեր շքախումբը.
Եւ նրանք, որոնք մնալու են դեռ,
Պէտք է այնպիսի տիպարներ լինեն,
Որ պատիւ բերեն տէրութեանը ձեր
Եւ կարողանան ճանաչել թէ՛ ձեր,
Թէ՛ իրենց յարգը:

ԼԻՐ

Դժո՛խք եւ դեւե՛ր...
Թամբեցէ՛ք ձիեր, հէ՛յ, շքախումբս...
Այլասերուած կի՛ն, այլեւս ես քեզ
Հոգս չեմ պատճառի: Ինձ դեռ մնում է
Իմ միւս դուստրը:

ԳՈՆԵՐԻԼ

Դուք ապտակում էք իմ ծառաներին,
Եւ ձեր վայրենի, անկարգ խուժանը

Հրամայում է այնպիսի մարդկանց,
Որոնք իրենցից աւելի բարձր են:

**Մտնում է Ալբանին:**

ԼԻՐ

Վա՜յ նրա գլխին, ով ուշ է զղջում:
*(Ալբանիին).*
Այդ դո՞ւք էք, պարո՛ն, ձեր կամքն է՞լ է այդ
Խօսեցէ՛ք, ձիերս արդէն պատրաստ են:
Ապերախտութի՛ւն, ժայռասիրտ դու դե՛ւ,
Ծովի ճրէշից աճռելի ես դու,
Երբ բնակւում ես մի զաւակի մէջ:

ԱԼԲԱՆԻ

Խնդրում եմ, պարո՛ն, ճամբերո՛ղ եղէք:

ԼԻՐ

Ո՜վ զազրելի ցի՛ն, զրպարտում ես դու.
Իմ ծառաները ազնիւ մարդիկ են
Ամենաազնիւ բնաւորութեամբ,
Նրանք կարգ-կանոն լաւ են իմանում,
Ամենազգոյշ ինքնասիրութեամբ
Նրանք պաճում են իրենց պատիւը:
Ինչպէ՞ս կարող էր այդքան գարշ թուալ
Ինձ Կորդելիայի չնչին յանցանքը,
Գալարել այնպէս բնութիւնս ողջ,
Դուրս կորզել յանկարծ իմ սրտի միջից
Նրա սէրն ամբողջ եւ մաղձով լցնել:
*(Խփելով գլխին).*
Օ՜, Լի՛ր, Լի՛ր, օ՜ Լի՛ր, խփի՛ր այս դռան,
Որ ներս ընդունեց խենթութիւնը քո
Եւ դուրս վտարեց խելքդ թանկագին:
*(Իր շքախմբին).*
Դէ, դո՛ւրս այստեղից:

ԱԼԲԱՆԻ

Տէ՛ր, ես անմեղ եմ.

Չգիտեմ ի՞նչն է ձեզ այդպէս յուզել:

ԼԻՐ

Գուցէ, տէ՛ր... Լսի՛ր, լսի՛ր, բնութի՛ւն,
Լսի՛ր, դիցուհի՛, այս աղերսանքը.
Թէ միտք ունէիր այս արարածին
Դու բեղմնաւորել՝ փոխի՛ր քո կամքը
Եւ ամլութի՛ւն տուր նրա արգանդին.
Չորացրո՛ւ նրա ծննդարանը,
Թող աշխարհ չգայ նրա պիղծ մարմնից
Ոչ մի երեխայ, որ նրան սիրէ.
Թէ յղիանայ՝ նրա ծնունդը
Մաղձի՛ց ստեղծիր, որպէսզի ապրի
Եւ հրէշային մի տանջանք դառնայ
Ու նրան տանջէ: Կնճիռնե՛ր փորէ
Մօր մատաղահաս ճակատի վրայ...
Յորդ արցունքներով ջրանցքներ բանայ
Նրա այտերին, նրա մայրական
Ամբողջ երախտիքն ու երկունքը ողջ
Ծաղր ու ծանակի առարկա՛յ լինէ,
Որպէսզի զգայ, թէ երախտամոռ
Զաւակ ունենալն օձի ժանիքից
Որքան է խայթող: Գնա՛նք, հեռանա՛նք:

**Դուրս են գնում:**

ԱԼԲԱՆԻ

Ո՛վ դուք, աստուածնե՛ր, ի՞նչն է պատճառը
Այս ամբողջ վէճի:

ԳՈՆԵՐԻԼ

Դու քեզ մի՛ տանջիր պատճառի համար.
Թո՛ղ նրա մաղձին ազատ ասպարէզ,
Որ զառանցանքը տալիս է նրան:

**Լիրը կրկին ներս է մտնում:**

ԼԻՐ

Տասնեւհինգ օրում իմ ասպետներից
Յիսուն հոգի են միայն մնացել:

ԱԼԲԱՆԻ

Ի՞նչ է եղել, տէ՛ր:

ԼԻՐ

Կասեմ...

**Արտասւում է:**

*(Գոներիլին).*

Մահ եւ կեանք...
Ես ամաչում եմ, որ կարող ես դու
Զրկել ինձ այսպէս արիութիւնից:
Այս արցունքներս, որ դուրս են յորդում
Կամքիս հակառակ՝ թող քե՛զ վիճակուեն:
Խորշակ, մառախուղ հարուածեն թող քեզ,
Թող հօր անէծքի անբոյժ վէրքերը
Ծակե՛ն, խոցոտե՛ն մարմինդ ամբողջ:
Օ՛հ, իմ ծեր աչքե՛ր, թէ համարձակուէք
Արտասուել կրկին, ես ձեզ կապտակեմ
Եւ դեն կնետեմ ջրերի հետ այն,
Որ թափում էք դուք եւ թրջում հողը:
Օ՛, միթէ գործը այստեղ է հասել.
Թող այդպէս լինի.
Բայց ես դեռ ունեմ մի ուրիշ դուստր էլ,
Որ, վստահ եմ ես, բարի է եւ լաւ.
Երբ նա իմանայ քո արարքը այս՝
Իր եղունգներով նա կյօշոտէ
Գայլային դէմքդ, եւ դու կտեսնես,
Որ ես կհասնեմ կրկին այն դիրքին,
Որ քո կարծիքով ընդմիշտ կորցրել

Եւ ժխտել եմ ես: Օ՜, վստահ եղիր,
Որ այս կտեսնես:

**Լիրը, Քէնտը եւ հետեւորդները դուրս են գնում:**

ԳՈՆԵՐԻԼ

Դուք տեսա՞ք, տէ՛ր իմ:

ԱԼԲԱՆԻ

Որքան էլ ես ձեզ ջերմ սիրով սիրեմ
Չեմ կարող սակայն աչառու լինել:

ԳՈՆԵՐԻԼ

Հանգի՛ստ կաց, խնդրեմ: Ե՛կ, Օսվա՛լդ, ո՞ւր ես:
*(Խեղկատակին).*
Դէ դու էլ, պարո՛ն, ոչ թէ խենթ՝ խարդա՛խ,
Հետեւիր տիրոջդ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Քեռի Լի՛ր, քեռի Լի՛ր, մի փոքր սպասի՛ր եւ խենթին էլ հետդ տար:

Թակարդ ընկած մի աղուէս
Եւ մի աղջիկ սրա պէս՝
Կհանէի կախաղան,
Թէ այս խեղճի գլխարկով
Ես գնէի մի պարան:
Խենթն էլ գնաց տիրոջ մօտ:

**Դուրս է գնում:**

ԳՈՆԵՐԻԼ

Այս մարդն ինձ տուեց մի լաւ գաղափար...
Ի՛նչ, հարիւր ասպե՞տ, խոհե՞մ բան է սա.
Վտանգաւոր չէ՞, թողլ տալ որ պահէ
Հարիւր թիկնապահ սպառազինուած:
Ոպէսզի ամէն չիմար երազի,
Ամէն ցնորքի, քմահաճոյքի,

Չնչին տրտունջի, գանգատի համար
Խելքի ուզածը նրանց ուժերով
Ի կատար ածէ, եւ մեր կեանքն անգամ
Կախում ունենայ հաճոյքից նրա...
Ի՛նձ նայիր, Օսվա՛լդ:

ԱԼԲԱՆԻ

Սակայն իզուր ես
Չափազանցնում քո երկիւղը գուցէ:

ԳՈՆԵՐԻԼ

Այդ լաւ է անմիտ վստահութիւնից.
Անհրաժեշտ է վտանգը կանխել,
Քան թէ թոյլ տալ, որ նրանք մեզ կանխեն:
Ես նրա սիրտը լաւ եմ ճանաչում:
Նա ինչ որ ասաց, գրեցի արդէն
Քրոջս, տեսնենք, քոյրս կուզենա՞յ
Ընդունել նրան եւ նրա հարիւր
Թիկնապահներին՝ նամակիցս յետոյ...
Ի՞նչ եղաւ, Օսվա՛լդ:

**Մտնում է Օսվալդը:**

Գրեցի՞ր արդեօք
Քրոջս նամակը:

ՕՍՎԱԼԴ

Այո՛, տիրուհի՛:

ԳՈՆԵՐԻԼ

Վերցրո՛ւ մարդիկ եւ շուտ ձի՛ նստիր,
Պատմի՛ր մանրամասն եւ երկիւղներն իմ,
Եւ քո կողմից էլ բե՛ր ապացոյցներ,
Որ էլ աւելի համոզիչ լինի:
Շուտ գնա՛, շուտ ե՛կ:

**Օսվալդը դուրս է գնում:**

*(Ալբանիին).*

Ո՛չ, սիրելի լո՛րդ,
Ո՛չ, ձեր կաթնահամ այդ հեզութիւնը
Եւ ձեր ընթացքը ես չեմ պարսաւում.
Սակայն, ներեցէ՛ք, աւելի շուտ ձեր
Անխոհեմութեան համար պէտք է ձեզ
Կշտամբել, քան թէ անմիտ մեղմութեան:

ԱԼԲԱՆԻ

Թէ որքան էք դուք հեռատես՝ հիմա
Չեմ կարող ասել: Ջգտելով յաճախ
Դէպ լաւագոյնը՝ կորցնում ենք լաւը:

ԳՈՆԵՐԻԼ

Դէ, այն ժամանակ...

ԱԼԲԱՆԻ

Գործը ցոյց կտայ
Եւ՝ ժամանակը:

**Դուրս են գնում:**

## ՏԵՍԱՐԱՆ Ե.

**Բակ Ալբանիի ամրոցի մէջ**
**Մտնում են Լիրը, Քէնտը եւ խեղկատակը:**

ԼԻՐ

Դու առա՛ջ անցիր եւ այս նամակը տար Գլո՛ստէր: Լսածներիցդ ոչինչ չասես աղջկանս, բացի այն, ինչ պէտք է պատասխանես նրա հարցերին իմ նամակի վերաբերմամբ: Եթէ շատ շտապով չգնաս՝ ես քեզանից առաջ այնտեղ կլինեմ:

ՔԷՆՏ

Տէ՛ր իմ, ես չեմ քնի, մինչեւ ձեր նամակը չյանձնեմ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Եթէ մարդու ուղեղը կրունկների մէջ լինէր՝ կոշտուկ չէ՞ր ունենայ:

ԼԻՐ

Այո՛, բարեկա՛մս:

ԽԵՂԿԱՏԱԿ

Ուրեմն, ուրա՛խ կաց. քո խելքը երբեք հողաթափերի կարիք չի ունենայ:

ԼԻՐ

Հա՛, հա՛, հա՛:

ԽԵՂԿԱՏԱԿ

Կտեսնես, որ միւս աղջիկդ էլ քեզ հետ նոյն քաղցրութեամբ կվարուի, որովհետեւ թէեւ նա նման է սրան, որքան վայրի խնձորը ընտանի խնձորի, սակայն ես ասում եմ այն, ինչ ասում եմ:

ԼԻՐ

Լա՛ւ, դու ի՞նչ ես ասում:

ԽԵՂԿԱՏԱԿ

Որ նրա համն էլ այնքան նման կլինի սրա համին, որքան մի վայրենի խնձոր մի վայրենի խնձորի: Կարո՞ղ ես ասել, թէ ինչո՞ւ մարդու քիթը դէմքի մէջտեղն է դրուած:

ԼԻՐ

Ո՛չ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Նրա համար, որ աչքի մէկը քթի այս կողմը լինի, միւսը՝ այն, որպէսզի եթէ մարդ չկարողանայ մի բանի հոտն առնել՝ գոնէ կարողանայ տեսնել այն:

ԼԻՐ

*(Մտազբաղ).* Ես նրա հետ անիրաւ վարուեցի...

ԽԵՂԿԱՏԱԿ

Կարո՞ղ ես ասել, թէ ոստրէն ինչպէս է շինում իր խեցին:

ԼԻՐ

Ո՛չ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Ես էլ չէմ կարող, բայց կարո՞ղ ես, ասել, թէ ինչու խխունջը մի տուն ունի:

ԼԻՐ

Ո՛չ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Նրա համար, որ գլուխը մէջը դնի, եւ ոչ թէ նրա համար, որ տայ իր աղջիկներին եւ իր եղջիւրները անապաստան թողնի:

ԼԻՐ

*(Մտախոհ).* Ես պէտք է մոռանամ իմ բնաւորութիւնը: Այսքան գորովալից մի հա՞յր: Ձիերս պատրա՞ստ են:

ԽԵՂԿԱՏԱԿ

Քո աւանակները գնացել են ձիերդ բերելու: Կարո՞ղ ես ասել՝ ինչո՞ւ եօթը աստղը եօթից աւելի չէ:

ԼԻՐ

Որովհետեւ ութը չէ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Ճիշտ որ դու լաւ խեղկատակ կարող ես լինել:

ԼԻՐ

*(Մտախոհ).* Բռնի ետ վերցնել... Օ՛, հրէշային ապերախտութիւն:

ԽԵՂԿԱՏԱԿ

Եթէ դու իմ խեղկատակը լինէիր, քեռի՛, ես քեզ ծեծել կտայի, որ ժամանակից առաջ ես ծերացել:

ԼԻՐ

Ինչո՞ւ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Դու չպէտք է ծերանայիր՝ խելահաս դառնալուց առաջ:

ԼԻՐ

Օ՛հ, գթառատ երկի՛նք, թոյլ չտաս, որ ես խելագար դառնամ, համբերութի՛ւն տուր ինձ: Չեմ ուզում խելագարուել:

**Մտնում է մի ազնուական:**

Ձիերս պատրա՞ստ են:

ԱԶՆՈՒԱԿԱՆ

Պատրաստ են, տէ՛ր իմ:

ԼԻՐ

Դէ գնա՛նք, գնա՛նք, բարեկա՛մ:

**Դուրս է գնում:**





# ԱՐԱՐՈՒԱԾ ԵՐԿՐՈՐԴ

## ՏԵՍԱՐԱՆ Ա.

**Գլոստէր դուքսին պատկանող ամրոցում**
**Մտնում են Էդմոնդը եւ Կուրանը:**

ԷԴՄՈՆԴ

Ողջո՛յն քեզ, Կուրա՛ն:

ԿՈՒՐԱՆ

Եւ ձեզ, պարո՛ն: Ես ձեր հօր մօտ էի եւ տեղեկացրի նրան, որ Կորնվալի դուքսը եւ Ռեգանը, նրա դքսուհին, այս գիշեր նրա մօտ կլինեն:

ԷԴՄՈՆԴ

Այդ ի՞նչ պատճառով:

ԿՈՒՐԱՆ

Ես ճիշտ չգիտեմ, դուք երեւի լսած կլինէք տարածուած լուրերը, այսինքն այն լուրերը, որ դեռ փսփսալով են ճաղորդում իրար:

ԷԴՄՈՆԴ

Ես ոչինչ չեմ լսել: Ասա՛, խնդրեմ, ի՞նչ լուրեր են դրանք:

КОРНУОЛЛ

Չէ՞ք լսել, որ Կորնվալի եւ Ալբանի դուքսերի միջեւ հավանական է պատերազմ ծագի:

ԷԴՄՈՆԴ

Ոչ մի բառ:

ԿՈՒՐԱՆ

Ծուտով կլսէք: Մնաք բարով, պարո՛ն:

Դուրս է գնում:

ԷԴՄՈՆԴ

Դուքսը այս գիշեր այստեղ է գալու.
Ծատ սքանչելի, նա ինքն է ընկնում
Իմ ոստայնի մէջ: Մարդ է ուղարկել
Հայրս՝ եղբօրս բռնելու համար:
Ես մի դեր ունեմ, շատ փափուկ մի դեր,
Որ պէտք է խաղամ: Ուրեմն ի գո՛րծ:
*(Կանչում է).*
Լսիր ինձ, Էդգա՛ր, բան եմ ասելու,
Ներքե՛ւ եկ, ո՞ւր ես...

Մտնում է Էդգարը:

Քեզ է որոնում
Հայրս, շուտ, փախի՛ր, տեղդ իմացել են:
Գիշերը քեզ շատ նպաստաւոր է.
Դու բա՞ն ես ասել Կորնվալի դէմ,
Նա հէնց այս գիշեր այստեղ է գալիս,
Եւ շատ շտապով, իր Ռեգանի հետ:
Դու բան չե՞ս ասել արդեօք նրա դէմ:
Ցիշի՛ր:

ԷԴԳԱՐ

Ոչ մի բառ:

ԷԴՄՈՆԴ

Լռի՛ր, ոտնաձայն.
Հայրս գալիս է… Ների՛ր, բայց հիմա
Մեր գործի համար անհրաժեշտ է,
Որ մենամարտենք, դէ, սուրդ քաշի՛ր
Եւ այնպէս ցոյց տուր, թէ պաշտպանւում ես:
Ես էլ եմ քաշում, հիմա նահանջի՛ր:
*(Ձայնը բարձրացնելով).*
Անձնատո՛ւր եղիր, ե՛կ հօրս առջեւ:
Օ՜, ճրագ բերէք…
*(Ծած).*
Փախի՛ր դու, եղբա՛յր:
*(Բարձր).*
Դէ, ջահե՛ր բերէք:
*(Ցած).*
Լա՛ւ, գնաս բարո՛վ:

**Էդգարը դուրս է գնում:**

Եթէ ինքս ինձ քիչ վիրաւորեմ,
Դա կարծել կտայ, որ լաւ եմ կռուել:

**Ինքն իրեն վիրաւորում է:**

Ես հարբածներ եմ տեսել, որ իրենց
Դեռ սրանից էլ շատ են չանգռտել:
*(Բարձր).*
Հա՛յր իմ, սպասի՛ր, կանգնի՛ր, օգնութի՛ւն:

**Մտնում են Գլոստէրը եւ ծառաները ջահերով:**

ԳԼՈՍՏԷՐ

Ի՞նչ եղաւ, Էդմո՛նդ, ո՞ւր է սրիկան:

ԷԴՄՈՆԴ

Նա հէնց այստեղ էր, իր սուրը քաշած

Կախարդանքներ էր նա մթութեան մէջ
Մրմնջում լուսնին, որ նրա պաշտպան
Տիրուհին լինի:

ԳԼՈՍՏԵՐ

Բայց ո՞ւր է հիմա:

ԷԴՄՈՆԴ

Նայեցէ՛ք, տէ՛ր իմ, արիւն է հոսում:

ԳԼՈՍՏԵՐ

Ո՞ւր է սրիկան:

ԷԴՄՈՆԴ

Այն կողմը փախաւ, երբ նա ոչ մի կերպ
Չկարողացաւ...

ԳԼՈՍՏԵՐ

*(Իր մարդկանց)*

Բռնեցէ՛ք նրան, վազէ՛ք ետեւից...

**Ծառաները վազում են:**

Չկարողացա՞ւ. ի՞նչ...

ԷԴՄՈՆԴ

Համոզեց, որ ես ձեզ սպանէի,
Բայց ես մերժելով նրան՝ ասացի,
Որ վրէժխնդիր աստուածներն իրենց
Շանթերն են ուղղում հայրասպանի դէմ,
Խօսեցի նաեւ այն բազմապատիկ
Կապերի մասին, որ հօր եւ որդու
Միջեւ յաւիտեան գոյութիւն ունեն.
Մի խօսքով, տէ՛ր իմ, երբ նա համոզուեց,
Թէ որքան խստիւ հակառակ եմ ես
Նրա դիւային դիտաւորութեան,

Նա կատաղաբար, սուրը քաշելով,
Յարձակում գործեց անպաշտպանիս դէմ
Եւ թեւս խոցեց, սակայն երբ տեսաւ,
Որ խիզախ որդին խրոխտ ճաւատով
Պաշտպանում է քաջ, եւ կամ սարսափած
Իմ աղաղակից՝ խոյս տուեց յանկարծ:

ԳԼՈՍՏԷՐ

Որքան էլ ճիմա նա ճեռու փախչի,
Խոյս տալ չի կարող մեր ձեռքից երբէք:
Այս գիշեր դուքսը, մեր ազնիւ տէրը
Եւ մեր պաշտպանը այստեղ է գալիս.
Նրա անունով կյայտարարեմ,
Որ ով որ գտնի այդ մարդասպանին
Եւ առաջնորդի նրան կախաղան,
Նա կարժանանայ մեր վարձատրութեան,
Իսկ ով թաքցնի՝ կդատապարտուի
Նա իսկոյն մաճուան:

ԷԴՄՈՆԴ

Ես ջանք թափեցի
Համոզել նրան, որ ճրաժարուի
Նա նպատակից իր արյունալի,
Բայց տեսայ, որ նա անդրդուելի է.
Խստիւ խօսքերով ես սպառնացի
Իր դաւը յայտնել, նա պատասխանեց.
Դու, ապօրինի եւ անժառանգ խե՛ղճ,
Մի՞թէ կարծում ես, որ եթէ ճերքեմ
Ես ասածներդ, պիտի կարենա՞ս
Քո ազնութեամբ եւ անկեղծութեամբ
Հաւատ ներշնչել դէպի քեզ, երբէ՛ք:
Ո՛չ, ես կճերքեմ քո ասածները,
Թէկուզ գիրս անգամ ապացոյց բերեն,
Այդ ամէնը կվերագրեմ
Քո նենգ, դաւադիր նպատակներին,
Տխմար կլինի ամբողջ աշխարճը,

Թէ չհաւատայ, որ իմ մահուանից
Քո ակնկալած օգուտներն են լոկ
Այն խթանները, որ դրդում են քեզ
Իմ մահը ցանկալ:

ԳԼՈՍՏԵՐ

Օ՛, հրէշաւոր,
Օ՛, նենգ սրիկա՛յ, ուզում է անգամ
Նա իր սեփական նամակն ուրանա՞լ:
Նա իմ որդին չէ:
*(Փողեր).*

Դուքսի փողերն են.
Չգիտեմ, սակայն ինչու է գալիս:
Պէտք է փոխել տամ նաւահանգիստը:
Չպէտք է թոյլ տամ սրիկան փախչի,
Դուքսը պէտք է ինձ այդ շնորհն անի.
Բայց պէտք է նաեւ նրա պատկերը
Ցղեմ ամենուր, որ ամենայն ոք
Այս պետութեան մէջ ճանաչի նրան:
Իսկ դու, իմ ազնիւ, բնական զաւա՛կ,
Ես ճար կգտնեմ քեզ կալուածներիս
Ժառանգն անելու:

**Մտնում են Կորնվալը, Ռեգանը եւ սպասաւորները:**

ԿՈՐՆՎԱԼ

Ի՞նչ բաներ են այս,
Ազնի՛ւ բարեկամ, հազիւ տեղ հասայ
Եւ տարօրինակ լուրեր լսեցի:

ՌԵԳԱՆ

Եթէ դա ճիշտ է՝ որեւէ պատիժ
Այդ յանցաւորին անբաւական է:
Ինչպէ՞ս է կոմսը:

ԳԼՈՍՏԵՐ

Ա՛խ, ազնիւ տիկի՛ն,
Իմ խեղճ, ծերունի սիրտը ճաքել է
Որդուս արարքից:

ՌԵԳԱՆ

Հօրս սանիկը
Դա՞ւ դնէ ձեր դէմ. նա, որին հայրս
Կնքահայր եղաւ, ձեր Էդգար որդին:

ԳԼՈՍՏԵՐ

Օ՛հ, ազնիւ տիկի՛ն, ամօթահար եմ.
Եթէ թաքցնե՛լ կարողանայի:

ՌԵԳԱՆ

Չէ՞ր ընկերացել արդեօք նա իմ հօր
Այն ամբարտաւան ասպետների հետ,
Որ ուղեկցում են նրան ամենուր:

ԳԼՈՍՏԵՐ

Չգիտեմ, տիկի՛ն:

ԷԴՄՈՆԴ

Ճիշտ է, տիրուհի՛,
Նա այդ խմբից էր:

ՌԵԳԱՆ

Դէ, էլ ի՞նչ զարմանք,
Որ նա այդպիսի մի միտք յղացաւ.
Նրանք են դրդել, որ նա սպանէ
Այս խեղճ ծերուկին, որ վատնեն յետոյ
Նրա կալուածները: Քոյրս այս գիշեր
Նամակ է գրել այդ մարդկանց մասին.
Նա ինձ այսպէս է նախազգուշացրել,
Որ եթէ նրանք ինձ մօտ գալ ուզեն՝
Տանից հեռանամ:

ԿՈՐՆՎԱԼ

Նոյնպէս ես, Ռեգա՛ն:

Լսել եմ, Էդմո՛նդ, որ ցոյց էք տուել
Մի որդիական հայրասիրութիւն:

ԷԴՄՈՆԴ

Դա իմ պարտքն էր, տէ՛ր:

ԳԼՈՍՏԷՐ

Նա յայտնեց դաւը.

Եւ տեսէք, անգամ վէրք է ստացել,
Երբ ջանացել է բռնել Էդգարին:

ԿՈՐՆՎԱԼ

Մարդ ուղարկե՞լ էք, որ ձերբակալեն:

ԳԼՈՍՏԷՐ

Այո՛, ազնիւ տէ՛ր:

ԿՈՐՆՎԱԼ

Թէ բռնեմ նրան՝

Երկիւղ չէք կրի էլ դուք նրանից.
Գործ դրէք իմ ողջ իշխանութիւնը,
Ինչպէս ձեր կամքն է: Գալով ձեզ, Էդմո՛նդ,
Որի գովելի հնազանդութիւնն
Այսքան վառ փայլեց հէնց այս վայրկեանին,
Մերն էք լինելու դուք այսուհետեւ:
Մենք շատ կարօտ ենք ձեզ պէս անձնուէր,
Անկաշառ մարդկանց:

ԷԴՄՈՆԴ

Տէ՛ր իմ, անկաշառ

Հաւատարմութեամբ ձեզ կծառայեմ՝
Եթէ ոչ ուրիշ արժանիքներով:

ԳԼՈՍՏԷՐ

Ես նրա կողմից շնորհակալ եմ:

ԿՈՐՆՎԱԼ
Չգիտէ՞ք ինչու ենք եկել ձեզ մօտ:

ՌԵԳԱՆ
Այսքան տարաժամ, այս մութ գիշերով
Ուղեւորուելով: Ծանր գործեր կան,
Իմ ազնիւ Գլո՛ստէր, եւ դրանց համար
Մեզ հարկաւոր են ձեր խորհուրդները:
Հայրս ինձ գրել է, նոյնպէս եւ քոյրս,
Թէ նրա՛նց միջեւ վէճեր են ծագել.
Յարմար չգտայ մեր տնից գրել.
Նրանց պատասխան թղթատարները
Պէտք է այստեղից տանեն պատասխան:
Դէ, մեր ծերունի, ազնիւ բարեկա՛մ,
Սփոփուէ՛ք հիմա եւ մեզ շնորհէ՛ք
Ձեր խորհուրդները մեր գործի մասին,
Որ պահանջում է անյապաղ վճիռ:

ԳԼՈՍՏԷՐ
Պատրաստ եմ, տիկի՛ն, ձեզ ծառայելու,
Բարի էք եկել:

**Դուրս է գնում:**

## ՏԵՍԱՐԱՆ Բ.

**Գլոստէրի ամրոցի առջեւ**

**Մտնում են Քէնտը եւ Օսվալդը՝ տարբեր կողմերից:**

ՕՍՎԱԼԴ
Բարեւ, բարեկա՛մ: Դու այս տանի՞ց ես:

ՔԷՆՏ
Այո՛:

ՕՍՎԱԼԴ

Ո՞ւր կարող ենք տեղաւորել մեր ձիերը:

ՔԷՆՏ

Տիղմի մէջ:

ՕՍՎԱԼԴ

Խնդրում եմ, եթէ սիրում ես ինձ, ա՛ս՛ա:

ՔԷՆՏ

Ես քեզ չեմ սիրում:

ՕՍՎԱԼԴ

Իմ էլ շատ հոգն է:

ՔԷՆՏ

Եթէ Լիպսբրիի որջում ձեռքս ընկնէիր՝ ես քեզ ցոյց կտայի՝ հոգդ է, թէ ոչ:

ՕՍՎԱԼԴ

Ինչո՞ւ ես նման բան ասում ինձ, ես քեզ չեմ ճանաչում:

ՔԷՆՏ

Իսկ ես քեզ ճանաչում եմ:

ՕՍՎԱԼԴ

Ո՛վ եմ ես, քո կարծիքով:

ՔԷՆՏ

Մի անպիտան, մի սրիկայ, մի պնակալէզ, մի անզգամ գոռոզ, տխմար մուրացիկ, երեք զոյգ հագուստի տէր, բրդէ կեղտոտ գուլպայ հագնող սրիկայ, մի երկչոտ, դատի դիմող սրիկայ, մի պոռնկի ձագ, հայելու նայող, հաճոյակատար, սեթեւեթ թշուառական, մի սնդուկ ժառանգող ստրուկ, մի մարդ, որ պատրաստ է կաւատ դառնալ ծառայութիւն մատուցելու համար, ոչ այլ ինչ՝ եթէ ոչ խառնուրդ սրիկայի, մուրացկանի, վատասրտի եւ կաւատի, մի խառնածին, քած շան ձագ, մի մարդ,

որը եթէ ուզենայ մերժել իր այս տիտղոսների թէկուզ ամենափոքրիկ վանկը՝ այնքան կտամ, որ շան պէս կվնգստայ:

ՕՍՎԱԼԴ

Ի՞նչ հրէշաւոր մարդ ես եղել դու, որ այսպէս անպատում ես մէկին, որ ո՛չ քեզ է ճանաչում եւ ո՛չ էլ ծանօթ է քեզ:

ՔԷՆՏ

Ի՞նչ պնդերես անառակն ես դու, որ ուրանում ես ինձ ճանաչելը: Երկու օր առաջ չէ՞ր, որ քեզ գետին գլորեցի եւ թագաւորի առաջ ծեծ տուի: Սուրդ քաշի՛ր, թշուառակա՛ն, թէեւ գիշեր է, բայց լուսինը փայլում է, այնպէս անեմ, որ լուսնի լոյսը միւս կողմիցդ դուրս գայ: Սուրդ դո՛ւրս քաշիր, պոռնկի ձա՛գ, խայտառա՛կ, սափրիչի ընկե՛ր, սուրդ դո՛ւրս քաշիր: *(Իր սուրը դուրս քաշելով):*

ՕՍՎԱԼԴ

Հեռացի՛ր, ես քեզ հետ գործ չունեմ:

ՔԷՆՏ

Սուրդ քաշի՛ր, թշուառակա՛ն, դու նամակներ ես բերել թագաւորի դէմ եւ սնափառութեան կուսակից դարձել նրա հօր վեհափառութեան դէմ: Սուրդ քաշի՛ր, թշուառակա՛ն, եթէ ոչ ոլոքներդ այնպէս կջարդեմ, որ... Սուրդ քաշի՛ր, թշուառական, պաշտպանուի՛ր:

ՕՍՎԱԼԴ

Օգնեցէ՛ք, օգնեցէ՛ք, սպանեցի՛ն:

ՔԷՆՏ

*(Ծեծելով նրան).* Կռուի՛ր, ստրո՛ւկ, դիմադրի՛ր, թշուառակա՛ն, դիմադրի՛ր, ստրո՛ւկ, պաշտպանուի՛ր:

ՕՍՎԱԼԴ

Օգնեցէ՛ք, օգնեցէ՛ք, սպանութի՛ւն, սպանութի՛ւն:

**Մտնում են Էդմոնդը, Կորնվալը, Ռեգանը, Գլոստէրը եւ ծառաներ:**

ԷԴՄՈՆԴ

Ի՞նչ կայ, ի՞նչ է պատահել, բաժանուեցէ՛ք:

ՔԷՆՏ

*(Դառնալով դէպի Էդմոնդը).* Եթէ կամենում էք, համեցէ՛ք, փոքրի՛կ պարոն, համեցէ՛ք, եւ ձեզ միս կուտեցնեմ, դէ, երիտասա՛րդ պարոն, առա՛ջ եկէք:

ԳԼՈՍՏԷՐ

Սու՛ր, զէ՛նք, ի՞նչ է պատահել այստեղ:

ՌԵԳԱՆ

Սրանք թագաւորի եւ իմ քրոջ նամակաբերներն են:

ԿՈՐՆՎԱԼ

Ինչի՞ մասին է ձեր վէճը, խօսեցէ՛ք:

ՕՍՎԱԼԴ

Շունչս կտրուել է, միլո՛րդ:

ՔԷՆՏ

Զարմանալի չէ, այնքան քաջութիւն ցոյց տուիր, որ... դու, նուա՛ստ թշուառական, բնութիւնը քեզ ուրանում է, պէտք է որ մի դերձակ քեզ շինած լինի:

ԿՈՐՆՎԱԼ

Դու զարմանալի մարդ ես, դերձակն էլ մա՞րդ շինէ:

ՔԷՆՏ

Այո՛, պարո՛ն, դերձակը, մի քարտաշ կամ ներկարար, դժուար թէ կարողանային մի այսքան անպիտան բան շինել, եթէ երկու ժամ էլ աշխատէին:

ԿՈՐՆՎԱԼ

Ասացէ՛ք, սակայն, ինչի՞ց ծագեց ձեր վէճը:

ՕՍՎԱԼԴ

Այս ծեր թշուառականը, որի կեանքը խնայեցի՝ յարգելով նրա ծեր մօրուքը...

ՔԷՆՏ

Դու շան ձա՛գ, դու անօգուտ տա՛ռ: Միլո՛րդ, եթէ թոյլ կտաք, ես այս կոպիտ սրիկային սանդի մէջ կծեծեմ եւ ծեփ շինելով՝ արտաքնոցի պատը կծեփեմ: Դո՞ւ խնայեցիր իմ սպիտակ մօրուքը, դո՞ւ...

ԿՈՐՆՎԱԼ

Լռի՛ր, անպիտա՛ն, բիրտ թշուառակա՛ն,
Պատկառել չգիտե՞ս:

ՔԷՆՏ

Այո՛, տէ՛ր, գիտեմ,
Բայց բարկութիւնն էլ ունի իր անխախտ
Իրաւունքները:

ԿՈՐՆՎԱԼ

Բայց ինչո՞ւ ես դու այդպէս բարկացել:

ՔԷՆՏ

Որ մի այսպիսի խեղճ թշուառական,
Համարձակւում է սուր կրել վրան,
Երբ ազնւութեան նշոյլ չի կրում:
Այս նենգ, ժպտադէմ ստահակները
Մկների նման կրծում են այն սուրբ
Կապերը, որոնք ոչ ոք չի կարող
Քանդել այլապէս: Շոյում են սրանք
Ամենայն մի կիրք, որ իրենց տիրոջ
Սրտին հաճելի եւ ցանկալի է:
Կրակի վրայ իւղ են սրսկում
Եւ ձիւն կուտակում սրտի վրայ սառ.
Ժխտում, հաստատում, ալկիոնի պէս
Իրենց կտուցը միշտ շուռ են տալիս

Լոկ այն ուղղութեամբ, ինչ ուղղութեամբ որ
Փչում են հողմերն իրենց տէրերի
Քմահաճոյքի, եւ շների պէս
Ոչինչ չգիտեն, բացի տէրերին
Հետեւելը:
*(Օսվալդին).*
Թող ժանտախտը լափէ
Սարսափած դէմքդ, դու ծիծաղո՞ւմ ես
Խօսքերիս վրայ, կարծում ես խե՞նթ եմ.
Լսի՛ր, սագի ձա՛գ, եթէ ճանկս ընկնես
Սարումի դաշտում՝ քեզ քարկոծելով
Ես կհալածեմ մինչեւ Կամելոտ:

ԿՈՐՆՎԱԼ
Դու խենթ ես, ծերո՛ւկ:

ԳԼՈՍՏԵՐ
Դու մեզ այն ասա՝
Ինչո՞ւ կռուեցիք:

ՔԷՆՏ
Չեն եղել երբեք
Հակառակորդներ այնքան հակադիր,
Որքան ես եւ այս թշուառականը:

ԿՈՐՆՎԱԼ
Ինչո՞ւ ես նրան այդպէս հայհոյում.
Նրա մեղքն ի՞նչ է:

ՔԷՆՏ
Նրա կերպարանքն
Ինձ հաճելի չէ:

ԿՈՐՆՎԱԼ
Ոչ էլ իմն անշուշտ:
*(Ցոյց տալով Էդմոնդին).*

Ոչ էլ սրանը:
*(Ցոյց տալով Ռեգանին).*

Ոչ էլ սրանը:

ՔԵՆՏ

Տէ՛ր, սիրում եմ ես ճշմարիտ խօսել.
Այո՛ տեսել եմ ես ժամանակին
Լաւագոյն դէմքեր, քան թէ տեսնում եմ
Աչքերիս առաջ:

ԿՈՐՆՎԱԼ

Նրանցից է սա,
Որին մի անգամ թէ գովաբանես,
Պարզութեան համար, դրանից յետոյ
Զեւացնելով միամտութիւն,
Բոնի փոխելով իր արտաքինը՝
Կսկսի կեղծել եւ շողոքորթել.
«Շողոքորթելու նա ընդունակ չէ,
Մի ազնիւ մարդ է, նա ճիշտն է ասում»:
Եթէ ընդունեն, շատ լաւ, եթէ ոչ՝
Ինքը մեղք չունի, նա ճիշտն է ասում:
Ճանաչում եմ այս սրիկաներին.
Այս մարդիկ իրենց անկեղծութեան մէջ
Ունեն աւելի խորամանկութիւն
Եւ ապականուած պիղծ նպատակներ,
Քան քսան տխմար գլուխ ծռողներ,
Որոնք մի փոքր շատ են մեծարում:

ՔԵՆՏ

*(Քաղցր ձայնով).*

Տէ՛ր իմ, ճշմարիտ, անկեղծ իսկութեամբ,
Եթէ թոյլ կտայ ձեր մեծութիւնը,
Որի շնորհը այն լուսաճաճանչ
Պսակի նման, որ շողշողում է
Ֆեբոսի գլխին…

ԿՈՐՆՎԱԼ

Դու ի՞նչ ես ուզում

Դրանով ասել:

ՔԵՆՏ

Ուզում եմ ոճս փոխել, երբ դա այդքան ձեզ անհաճոյ է: Ես պնդում եմ, տէ՛ր, որ շողոքորթ չեմ: Նա, որ խաբել է ձեզ իր պարզ խօսքերով, պարզապէս մի սրիկայ է եղել: Մի բան, որ ես չեմ կարող լինել, որքան էլ ինձ խնդրէք:

ԿՈՐՆՎԱԼ

*(Օսվալդին).*

Ինչո՞վ ես արդեօք սրան անարգել:

ՕՍՎԱԼԴ

Տէ՛ր, ոչ մի բանով: Քանի օր առաջ
Արքան, իր տէրը, թիւրիմացութեամբ
Ուզեց ինձ խփել, սա էլ նրա հետ,
Նրա զայրոյթը շողոքորթելով,
Ետեւիցս հրեց եւ գետին գցեց.
Երբ գետին ընկայ՝ այնքան հայհոյեց,
Այնքան ինձ մրեց եւ քաջ ձեւացաւ,
Որ արժանացաւ տիրոջ գովեստին,
Յաղթանակելով անձնատուր եղած
Մի անօգ մարդու, եւ այսօր կրկին
Յիշելով նախկին իր քաջութիւնը՝
Սուր քաշեց վրաս:

ՔԵՆՏ

Չկայ ոչ մէկը
Այս նուաստացած սրիկաներից.
Որ գոռոզութեամբ, ինքնագովութեամբ
Այաքսին անգամ չգերազանցի:

ԿՈՐՆՎԱԼ

Կոճղե՛ր բերեցէք, յամա՛ռ սրիկայ,

Մենք քեզ ցոյց կտանք, յարգելի գոռո՛զ...

ՔԷՆՏ

Տէ՛ր, խրատուելու համար ես արդէն
Ծեր եմ բաւական, կոճղեր մի՛ բերէք:
Ես թագաւորի ծառան եմ խոնարհ,
Այստեղ եմ եկել իր հրամանով.
Դուք շատ քիչ յարգանք կյայտնաբերէք
Եւ խիստ յանդուգն չարակամութիւն,
Դէպի իմ տիրոջ անձը վեհափառ՝
Պատժելով նրա նամակաբերին:

ԿՈՐՆՎԱԼ

Բերէ՛ք կոճղերը: Երդւում եմ կեանքովս
Եւ պատուիս վրայ՝ դու մինչեւ կեսօր
Այստեղ կնստես:

ՌԵԳԱՆ

Ի՞նչ, մինչեւ կեսօ՞ր.
Ո՛չ, մինչեւ գիշեր, գիշերն էլ ամբողջ:

ՔԷՆՏ

Տիկի՛ն, թէ ձեր հօր շունն էլ լինէի՝
Չպէտք է ինձ հետ այդպէս վարուէիք:

ՌԵԳԱՆ

Բայց քանի որ դու իր սրիկան ես՝
Այսպէս կվարուեմ:

**Բերում են կոճղերը:**

ԿՈՐՆՎԱԼ

Սա այն սրիկայ մարդկանցից է հէնց,
Որոնց մասին իմ քոյրը գրել է:
Դէ, շո՛ւտ, կոճղերը բերեցէք այստեղ:

ԳԼՈՍՏԵՐ

Տէ՛ր, աղաչում եմ ձերդ մեծութեան,
Այդ բանը չանել. ծանր է յանցանքը,
Բայց բարի արքան, որ նրա տէրն է,
Կպատժէ նրան այդ մեղքի համար.
Սակայն այդպիսի մի անարգ պատիժ
Արժանի է լոկ ամենից ստոր
Սրիկաներին՝ նրանց գողութեան
Եւ այլ գռեհիկ մեղքերի համար:
Թագաւորն, անշուշտ, կվիրաւորուի,
Երբ այս աստիճան անարգանք կրի՝
Յանձին իր յղած պատգամաւորի,
Որին դուք այսպէս կաշկանդում էք, տէ՛ր:

ՌԵԳԱՆ

Քոյրս աւելի կվիրաւորուի,
Որ անարգուած է իր թիկնապահը,
Մեծի ենթարկուած լոկ այն պատճառով,
Որ կատարել է իր հրամանը:
Դէ, դրէ՛ք ոտքերը կոճղերի մէջ:

**Քէնտի ոտքերը կոխում են կոճղերի մէջ:**

*(Կորնվալին).*
Եկ, ազնիւ տէ՛րս, գնանք այստեղից:

ԳԼՈՍՏԵՐ
*(Քէնտին).*
Ես շատ եմ ցաւում քեզ համար, սակայն
Դուքսի կամքն է այդ, ամէն ոք գիտէ,
Որ յամառ է նա բնաւորութեամբ,
Չի թողնում անգամ, որ մօտից անցնեն,
Կամ հակաճառեն: Սակայն քեզ համար
Ես կմիջնորդեմ:

ՔԷՆՏ

Մի՛ արէք, խնդրեմ.

Ես շատ եմ յոգնել, անքուն մնացել
Ժամփորդութեան մէջ, մի քիչ կքնեմ,
Քիչ էլ կսուլեմ: Լաւ մարդու բախտը
Փոփոխական է: Տէրն ընդ ձեզ, պարո՛ն:

ԳԼՈՍՏԵՐ

Դուքսը այս գործում պարսաւելի է.
Նրա արարքը վատ հետեւանքներ
Կարող է բերել:

**Դուրս է գնում:**

ՔԵՆՏ

Բարի՛ թագաւոր,
Քո գլխին եկաւ հին ասացուածքը.
Անձրեւից փախար, ընկար ծովի մէջ:

**Ծոցից մի թուղթ է հանում՝ լուսնի լոյսով սկսում է կարդալ.**

Մօ՛տ եկ, ո՛վ լապտեր մեր երկրագնդի,
Որ քո այդ քաղցր ճառագայթներով
Կարդամ այս թուղթը: Հրաշքները միշտ
Պատահում են մեզ թշուառութեան մէջ:
Կորդելիան է այս նամակը գրել.
Բարեբախտաբար նա լուր է առել
Իմ ծպտման մասին: «Իրերի դժբախտ
Այս դրութիւնը առիթ է տալիս
Ինձ ջանք գործ դնել այդ չարիքներից
Մեզ այսուհետեւ փրկելու համար»:
Ո՛վ իմ տաղտկացած, իմ անքուն աչքե՛ր,
Օգտ՛ւտ քաղեցէք ձեր յոգնութիւնից,
Որ այս ամօթի վայրը չտեսնէք:
Բա՛խտ, բարի գիշեր, մէկ էլ ինձ ժպտա՛
Եւ մի անգամ էլ շո՛ւռ տուր անիւդ:

**Քնում է:**

## ՏԵՍԱՐԱՆ Գ.

**Մացառուտ դաշտամաս**
**Մտնում է Էդգարը:**

ԷԴԳԱՐ

Իմ մասին տուած յայտարարութեան
Լուրը լսեցի եւ մի բարեբաստ
Ծառի խոռոչով ճողոպրելով դուրս՝
Ազատուեցի իմ խուզարկուներից:
Չմնաց ազատ մի նաւահանգիստ,
Ոչ էլ ուրիշ տեղ, ուր պահակները
Մի արտասովոր ուշադրութեամբ
Ինձ չխուզարկեն: Եթէ յաջողուի
Խոյս տալ դրանցից՝ ես ազատուած եմ:
Պէտք է ստանձնեմ այժմ մի գծուծ
Եւ անարգուած ձեւ, որով երբեւէ
Ծպտելով իրեն՝ թշուառութիւնը,
Իբրեւ անարգանք մարդկային ցեղի՝
Մօտեցնում է մարդուն գազանի:
Պէտք է երեսս ցեխով շաղախեմ,
Կողերս ծածկեմ ցնցոտիներով,
Մազերս անեմ գզուզ ու ճաղանճ
Եւ իմ մերկութեամբ դէմ դնեմ երկնի
Հողմերին եւ սեւ հալածանքներին:
Պէտք է օրինակ դարձնեմ ես ինձ
Բէդլամից ելած մուրացկաններին,
Որոնք շրջում են այստեղ եւ իրենց
Վայրի կանչերով, աղաղակներով
Ասեղներ, գամեր եւ փայտեայ փշեր
Խրում են իրենց անզգայացած,
Մերկ եւ պնդացած բազուկների մէջ
Եւ զարհուրելի այս կերպարանքով
Աղքատ գիւղերից, ագարակներից,
Ջրաղացներից եւ փարախներից

Մերթ լուսնոտային չարամաղթութեամբ,
Մերթ աղօթքներով հաց են ստանում:
Խե՛ղճ Տըլիգուդ, խե՛ղճ Տոմ, դուք էլ մի բան էք,
Լոկ ես՝ Էդգարս եմ, ոչինչ ու ոչինչ:

**Դուրս է գնում:**

## ՏԵՍԱՐԱՆ Դ.

**Գյոստէրի ամրոցում**

**Մտնում են Լիրը, Խեղկատակը եւ մի ասպետ:**

ԼԻՐ

Զարմանալի է, տանից մեկնել են
Եւ ետ չեն յղել նամակատարիս:

ԱՍՊԵՏ

Որքան իմացայ ես, երէկ գիշեր
Նրանք մեկնելու դիտում չունէին:

ՔԷՆՏ

Ողջո՛յն, ազնի՛ւ տէր:

ԼԻՐ

Օ՛հ, այդ ի՞նչ բան է.
Մի՞թէ կատակի համար ես դու, մա՛րդ,
Այդ ամօթալի դիրքը ընդունել:

ՔԷՆՏ

Ո՛չ, տէ՛ր իմ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Հա՛-հա՛-հա՛-հա՛, տես ինչ սոսկալի ծնկակապեր է կրում: Ձիերին գլխից են կապում, շներին եւ արջերին՝ վզից, կապիկներին՝ մէջքերից, իսկ մարդկանց՝ ոտքերից: Երբ մարդու ոտ-

քերը չափազանց ուժեղ են լինում, նրան փայտէ գուլպաներ են հագցնում:

ԼԻՐ

Ո՞վ արհամարհեց քո աստիճանը
Եւ քո ոտքերին կապանքներ դրեց:

ՔԷՆՏ

Երկուսն էլ, տէ՛ր իմ, ձեր ուստրն ու դուստրը:

ԼԻՐ

Ո՛չ:

ՔԷՆՏ

Այո՛:

ԼԻՐ

Ո՛չ, ասում եմ քեզ:

ՔԷՆՏ

Այո՛, ասում եմ:

ԼԻՐ

Ո՛չ, չէին անի:

ՔԷՆՏ

Այո՛, արել են:

ԼԻՐ

Երկինքը վկայ, ասում եմ, որ ո՛չ:

ՔԷՆՏ

Երկիրը վկայ, ասում եմ՝ այո՛:

ԼԻՐ

Չեն համարձակուի նման բան անել,

Ո՛չ, չէին կարող, չէին կամենայ:
Առաւել վատ է սպանութիւնից
Նման անարգանք մարդու հասցնել:
Դէ, պատասխանի՛ր ինձ անմիջապէս,
Թէ ինչ պատճառով դու արժանացար
Կամ ենթարկուեցիր այդպիսի բախտի,
Դու, որ մեր կողմից առաքուած էիր:

ՔԷՆՏ

Տէ՛ր իմ, երբ հասայ ես նրանց տունը,
Յանձնեցի նրանց ձերդ բարձրութեան
Գրած նամակը: Նախքան կամեցայ
Ծնկաչոք յարգանք մատուցանելու,
Մի քրտնաշաղախ սուրհանդակ հասաւ,
Լեզուն ցամաքած եւ կէս շնչասպառ,
Եւ Գոներիլի՝ իր մեծ տիրուհու
Անունից նրանց ողջոյններ յղեց,
Եւ ընդմիջելով ընթերցումը ձեր
Նամակի, նրանց յանձնեց մի նամակ,
Որ եւ կարդացին նրանք շտապով:
Երբ տեղեկացան գրածին՝ իսկոյն
Նրանք կանչեցին ուղեկիցներին
Եւ ձի նստելով՝ սառն ակնարկներ
Նետելով նրանց, մինչեւ հանեցան
Պատասխան տալ ինձ: Հէնց այդ ժամանակ
Ես հանդիպեցի այն թղթաբերին,
Որի գալուստը, ինչպէս դիտեցի,
Թունաւորել էր յաջողութիւնն՝
Այն մարդուկն էր այդ, որ վերջերս ձեզ
Այնքան անվայել պատասխան տուեց:
Իսկ ես գտնելով աւելի կորով,
Քան թէ խելք իմ մէջ՝ սուրս քաշեցի,
Նա երկչոտաբար, գոռում գոչումով
Տունը լցրեց: Ձեր դուստրը եւ փեսան
Իմ այդ յանցանքը դատապարտեցին
Այս անարգանքին, որ կրում եմ արդ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Ձմեռը դեռ չի վերջացել, եթէ վայրի բադերը այդ կողմն են թռչում:

Երբ ցնցոտի հագնի հայրը՝
Զաւակները կկուրանան,
Իսկ երբ ոսկի բերի հայրը՝
Կփայփայեն նրանք նրան.
Երբէք բախտը՝ պոռնիկն այդ չար,
Դուռ չի բանայ խեղճի համար:

Բայց այսուհանդերձ, դու քո սիրելի աղջիկներից այնքան ես ցաւեր քաշելու, որքան դրամ չես էլ կարող հաշուել մի ամբողջ տարում:

ԼԻՐ

Օ՛հ, ինչպէս է այս զգուելի ախտը
Սիրտս գրոհում: Ա՛խտ մոլեգնութեան,
Որքա՛ն ստոր է քո էութիւնը:
Ո՞ւր է այդ դուստրը:

ՔԷՆՏ

Ներսն է՝ կոմսի հետ:

ԼԻՐ

Մի՛ հետեւէք ինձ, մնացէ՛ք այստեղ:

Գնում է:

ԱՍՊԵՏ

Չե՞ս գործել արդեօք մի ուրիշ յանցանք քո պատմածներից բացի:

ՔԷՆՏ

Ո՛չ: Ինչո՞ւ սակայն այսքան քիչ մարդ կայ թագաւորի հետ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Եթէ միայն այդ հարցիդ համար ոտքերդ կոճղերի մէջ դրած լինեին՝ արժանի էիր:

ԱՄՊԵՏ

Ինչո՞ւ, խեղկատակ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Մենք քեզ մրջյունի մոտ դպրոց կուղարկենք, որպեսզի քեզ սովորեցնի, որ ձմեռը չեն աշխատում: Ով իր քթին է հետեւում, նա առաջնորդւում է իր աչքերով, բացի կույրերից, եւ քսան քթի մեջ մեկը չկայ, որ չզգայ, թէ ով է գարշահոտ հանում: Երբ մի մեծ անիւ բլուրից վար է գլորւում, բա՛ց թող, եթէ ոչ վիզդ կկոտրես՝ հետեւելով նրան: Բայց եթէ կայ մի մեծը, որ բլուրից վեր է գնում՝ դու էլ կպիր նրան, որ քեզ էլ հետը վեր տանի: Երբ մի խելացի մարդ քեզ աւելի լաւ խորհուրդ տայ՝ իմը ե՛տ տուր ինձ: Ես կուզենայի, որ անպիտան մարդիկ միայն հետեւէին իմ խորհրդին, որովհետեւ խորհուրդ տուողը մի խեղկատակ է:

Ով իր շահին է ծառայում՝
Չար մտքով է հետեւում քեզ:
Հէնց որ գլխիդ անձրեւ տեղայ՝
Նա կփախչի անմիջապէս:
Նա կփախչի թողնելով քեզ
Անձրեւի տակ, մենակ, վհատ,
Բայց խենթը չի փախչի երբեք՝
Խելօքներին թողնելով այդ:
Խենթ է սրիկան, թէ չփախչի,
Սակայն խենթը սրիկայ չի:

ՔԷՆՏ

Որտե՞ղ ես սովորել այդ երգը, խենթո՛ւկ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Ոչ կոճղերի մէջ, խե՛նթ:

**Մտնում է Լիրը Գլոստէրի հետ:**

ԼԻՐ

Մերժել՝ ընդունել կամ խօսել ինձ հետ.

Հիւանդ են, յոգնած. ամբողջ գիշերը
Ճամփայ են եկել, սի՛ն պատրուակներ:
Գնա՛ դու, Գլո՛ստէր, եւ բե՛ր ինձ մի այլ,
Ստոյգ պատասխան:

ԳԼՈՍՏԷՐ

Իմ սիրելի տէ՛ր,
Քաջ յայտնի է ձեզ մեր դուքսի յամառ
Եւ անդրդուելի բնոյթը: Նա իր
Խօսքը չի փոխում:

ԼԻՐ

Մա՛հ, ժանտա՛խտ, վրէ՛ժ.
Ի՞նչ յամառ բնոյթ, ի՞նչ անդրդուելի.
Օ՛, Գլո՛ստէր, Գլո՛ստէր, ես պիտի խօսեմ
Կորնվալի դուքսի եւ իր կնոջ հետ:

ԳԼՈՍՏԷՐ

Բայց, ազնիւ իմ տէ՛ր, ես հաղորդեցի
Նրանց այդ մասին:

ԼԻՐ

Հաղորդի՛ր կրկին,
Հասկանո՞ւմ ես ինձ, ո՛վ մարդ:

ԳԼՈՍՏԷՐ

Այո՛, տէ՛ր:

ԼԻՐ

Ա՛հ, թագաւորը ուզում է խօսել
Կորնվալի հետ, սիրելի հայրը
Ուզում է խօսել իր աղջկայ հետ
Եւ ծառայութիւն խնդրել նրանցից.
Գիտեն նրանք այս, ո՛վ իմ կեանք եւ շունչ.
Դուքսը յամա՞ռ է, սա՛ա՛ այդ դուքսին.
Բայց ո՛չ, ո՛չ, դեռ ո՛չ... գուցէ հիւանդ է.

Տկարութիւնը միշտ զանց է առնում
Ամէն տեսակի պարտականութիւն,
Որ կապուած է մեր առողջութեան հետ.
Երբ տառապում է մարմինը՝ այնժամ
Տէրը չէ նաեւ մարդկային հոգին.
Նա իր տէրը չէ. պէտք է համբերեմ.
Ես բարկացած եմ կոյր զայրոյթիս դէմ.
Անիծեա՛լ վիճակ:
*(Նայելով Քէնտին).*
Սա այստե՛ղ նստի. նրանց այս գործը
Ինձ համոզում է, որ դուքսի եւ իր
Կնոջ այսպիսի առանձնանալը
Մի խաղ է միայն: Թող անմիջապէս
Վերադարձնեն իմ ծառային ինձ:
*(Գլոստէրին).*
Գնա՛ դուքսի մօտ եւ նրա կնոջ
Եւ ասա՛, որ ես ուզում եմ իսկոյն
Խօսել նրանց հետ, շո՛ւտ, այս վայրկեանի՛ն.
Հրամայի՛ր նրանց դուրս գալ, լսել ինձ.
Եթէ ոչ՝ ինքս կգնամ հիմա
Նրանց դռան մօտ այնպէս բարձրաձայն
Կթմբկահարեմ, որ նրանց քունը
Ընդմիշտ կփախչի:

ԳԼՈՍՏԷՐ

Տէ՛ր, ես ուզում եմ
Ամէն բան ձեր մէջ խաղաղ վերջանայ:

**Դուրս է գնում:**

ԼԻՐ

Ա՛խ, սի՛րտս, յուզուող սի՛րտ: Բայց ո՛չ, հանդարտուի՛ր:

ԽԵՂԿԱՏԱԿ

Խօսի՛ր սրտիդ հետ, ինչպէս խոհարարուհին էր խօսում ձկնիկների հետ՝ նրանց ողջ-ողջ խմորի մէջ դնելով. ճիպոտով

նա զարկում էր նրանց կատարներին եւ ասում «ցա՛ծ իջէք, թշուառնե՛ր, ցա՛ծ»: Դրա եղբայրն էլ այնքան էր սիրում իր ձիուն, որ նրա խոտին կարագ էր քսում:

**Մտնում են Կորնվալը, Ռեգանը, Գլոստէրը եւ ծառաներ:**

ԼԻՐ

Բարեւ ձեզ:

ԿՈՐՆՎԱԼ

Բարեւ, ձե՛րդ մեծութիւն:

**Քէնտին արձակում են:**

ՌԵԳԱՆ

Ուրախ եմ, արքա՛յ, որ տեսնում եմ ձեզ:

ԼԻՐ

Կարծում եմ, Ռեգա՛ն, որ դու ուրախ ես:
Եւ տեղիք ունեմ այդպէս կարծելու:
Թէ գիտենայի, որ դու ուրախ չես,
Ես պսակալոյծ պիտի լինէի
Մորդ շիրիմից՝ թողած լինելով
Ծնացող մի կին:
*(Քէնտին).*
Ա՛հ, ազա՞տ ես դու.
Բայց այդ թող մնայ ա՛յլ ժամանակի:
Սիրեցեալ Ռեգա՛ն, քոյրդ շատ փուչն է.
Նա կապեց այստեղ ապերախտութեան
Գիշատիչ անգղը, այստեղ, իմ սրտին:
Հազիւ թէ քեզ հետ խօսել կարենամ.
Դու չես հաւատայ ինչ լկտի ձեւով...

ՌԵԳԱՆ

Խնդրում եմ, տէ՛ր իմ, եղէք համբերո՛ղ,
Աւելի սակայն հաւանական է,

Որ դուք ինքներդ էք անկարող եղել
Գնահատելու նրան, քան նա է
Ջանցառու եղել իր պարտքերի մեջ:

ԼԻՐ

Ի՞նչ, ի՞նչ ասացիր:

ՌԵԳԱՆ

Ես չեմ կարծում, տէ՛ր,
Որ իր պարտքը նա զանց առած լինի:
Եթէ պատահմամբ նա զսպել է ձեր
Թիկնապահների խռովութիւնը,
Ապա այնպիսի նա հիմքեր ունի
Եւ այնքան լաւ է իր նպատակը,
Որ նա հեռու է ամէն պարսաւից:

ԼԻՐ

Անէ՛ծք իր գլխին:

ՌԵԳԱՆ

Տէ՛ր իմ, դուք ծեր էք.
Ձեր երկար կեանքը հասել է արդէն
Իր ճանապարհի վերջին եզերքին:
Աւելի լաւ է, որ ձեր ղեկը դուք
Այժմ այնպիսի մի մարդու յանձնէք,
Որ ձեր վիճակը ձեզնից լաւ գիտէ:
Խնդրում եմ, ուրեմն, որ վերադառնաք
Կրկին նրա մօտ եւ ասէք նրան,
Որ սխալուել էք:

ԼԻՐ

Ես նրա՞ւ մ խնդրեմ,
Գիտէ՞ք դա որքան պատիւ կբերէ
Մի ընտանիքի՝ «Սիրելի դստրի՛կ,
Խոստովանում եմ, որ ծերացել եմ,
Ծերերն անպէտք են, ահա ծնկաչոք

*(Մունկ չոքելով).*
Աղերսում եմ ձեզ, որ ինձ շնորհեք
Հանգիստ ու ապրուստ»:

ՌԵԳԱՆ

Բավական է, տէ՛ր.
Այդ կատակները անվայել են ձեզ.
Վերադարձէ՛ք իմ քրոջ մօտ:

ԼԻՐ

Երբէ՛ք,
Օ՛, երբէ՛ք, Ռեգա՛ն. նա շքախմբիս
Կէսը կրճատեց, մռայլ հայեացքներ
Նետեց ինձ վրայ եւ օձի լեզուով
Իմ սիրտը խայթեց: Թող երկնի բոլոր
Պատուհասները թափուեն ապերախտ
Այդ գլխի վրայ: Ո՛վ ժանտ խորշակներ,
Փշրեցէ՛ք նրա նուրբ ոսկորները,
Ընդմիշտ խեղանդա՛մ դարձրէք նրան:

ԿՈՐՆՎԱԼ

Ամօթ է, տէ՛ր իմ:

ԼԻՐ

Ո՛վ, թեժ կայծակներ,
Ձեր կուրացուցիչ հուրը ժայթքեցէ՛ք
Արհամարհալից այն աչքերի մէջ,
Խամրեցրէ՛ք նրա գեղեցկութիւնը.
Ո՛վ ճահիճներից ելնող գոլորշիք,
Որ արեգակի շնչով էք եղել,
Ընկճեցէ՛ք նրա հպարտութիւնը:

ՌԵԳԱՆ

Ո՛վ սուրբ աստուածներ, ի՞նձ էլ պիտի դուք
Այդպէս անիծէք, եթէ բորբոքուէք:

ԼԻՐ

Ո՛չ, Ռեգա՛ն, երբեք դու չես ստանայ
Իմ անէծքները:
Ո՛չ, գորովագութ քո բնութիւնը
Երբեք չի տրուի կարծրասրտութեան.
Նրա աչքերը սարսափելի են,
Իսկ քո աչքերը սիրտ են սփոփում,
Նրանք չեն այրում: Դու չէիր կարող
Թշնամի լինել իմ հաճոյքներին,
Կրճատել թիւը իմ շքախմբի,
Կամ ուղղել ինձ բիլտ եւ կոպիտ խօսքեր,
Կրճատել պարենն ինձ համար տրուած,
Եւ, բոլորից վերջ, քո դուռը փակել
Եւ դուրս թողնել ինձ: Ո՛չ դու լաւ գիտես
Բնութեան պարտքը, հօր երախտիքը,
Կարգ ու կանոնը քաղաքավարութեան,
Դու չես մոռացել թագաւորութեան
Այն կէսը, որ ես պարգեւել եմ քեզ:

ՌԵԳԱՆ

Շատ լաւ, ազնիւ տէ՛ր, անցնենք բուն խնդրին:

**Փողեր ներսից:**

ԼԻՐ

Ո՞վ իմ ծառային անարգեց այդպէս:

ԿՈՐՆՎԱԼ

Ի՞նչ փողի ձայն է:

**Մտնում է Օսվալդը:**

ՌԵԳԱՆ

Գիտեմ իմ քոյրն է.
Նա գրել էր ինձ, որ շուտով կգայ:
*(Օսվալդին).*
Եկա՞ւ տիրուհիդ:

ԼԻՐ

Ահա սրիկայ,
Որի անտեղի հպարտութիւնը
Կախուած է միշտ իր տիրոջ շնորհից.
Դո՛ւրս գնա, ստրո՛ւկ, կորի՛ր իմ աչքից:

ԿՈՐՆՎԱԼ

Դուք ի՞նչ էք ուզում ասել, տէ՛ր արքայ:

ԼԻՐ

Ո՞վ իմ ծառային կոճղի մէջ դրեց.
Յոյս ունեմ, Ռեգա՛ն, որ դու տեղեակ չես:
Այդ ո՞վ է գալիս:
*(Տեսնելով ներս մտնող Գոներիլին).*

Ո՛վ դուք, աստուածնե՛ր,
Եթէ սիրում էք ծերունիներին,
Թէ կողմնակից էք դուք որդու հլու
Հնազանդութեան, թէ ծեր էք դուք էլ,
Ապա այս դատին զօրաւի՛գ եղէք.
Ծանթե՛ր թափեցէք այժմ իր գլխին
Եւ պաշտպանեցէ՛ք իմ իրաւունքը:
*(Գոներիլին).*
Դու չե՞ս ամաչում նայել մօրուքիս,
Օ՛, Ռեգան, ինչպէ՞ս կարող ես բռնել
Դու նրա ձեռքը:

ԳՈՆԵՐԻԼ

Ինչո՞ւ չէ, պարո՛ն,
Ի՞նչ մեղք եմ գործել, մեղք չէ ամէն բան,
Ինչ որ մեղք թուայ անխոհեմութեան,
Կամ տխմար մի ծեր այդպէս անուանէ:

ԼԻՐ

Օ՛, կողեր, պինդ էք, դեռ դիմանում էք:
Ինչպէ՞ս պատահեց, որ իմ ծառային
Կոճղեր դրեցիք:

ԿՈՐՆՎԱԼ

Ես հրամայեցի.
Բայց նրա գործած լրբութիւնները
Արժանի էին աւելի վատի:

ԼԻՐ

Դո՞ւք այդ արեցիք:

ՌԵԳԱՆ

Խնդրում եմ ձեզ, հա՛յր,
Որ եթէ թոյլ էք, թոյլ էլ երեւաք:
Եթէ դուք մինչեւ այս ամսի վերջը
Վերադառնաք եւ մնաք նրա մօտ՝
Ձեր շքախմբի կէսն արձակելով,
Դրանից յետոյ կարող էք գալ իմ
Ապարանքը եւ իմ հիւրը մնալ:
Այժմ տեսնում էք, ես իմ տանը չեմ
Եւ դեռ չեմ տեսել ձեզ ընդունելու
Համար հարկ եղած պատրաստութիւններ:

ԼԻՐ

Ես վերադառնամ կրկին նրա մօ՞տ,
Իմ շքախմբի կէսը արձակած.
Ո՛չ, ես աւելի կնախընտրէի
Մերժել ամէն հարկ եւ պայքար մղել
Բուռն հողմերի կատաղութեան դէմ,
Լինել գայլերի ընկեր եւ ոռնալ
Սովի եւ քաղցի սուր ճիրաններից,
Քան վերադառնալ... նրա մօ՞տ... կրկին...
Օ՛հ, այն տաքարիւն Ֆրանսիայի արքան,
Որ իմ անօժիտ աղջկան առաւ,
Ես աւելի շուտ կերթամ նրա մօտ,
Կընկնեմ ծնկաչոք իր գահի առջեւ,
Իբր զինակիր թոշակ կմուրամ
Մի ցած եւ անարգ ապրուստի համար.
Բայց վերադառնալ կրկին նրա մօ՞տ...

Լաւ չէ՞ր աւելի խորհուրդ տայիր ինձ
Լինել մի ստրուկ, բեռնակիր գրաստ
Այս գարշ ծառայի:

**Ցոյց է տալիս Օսվալդին:**

ԳՈՆԵՐԻԼ
Ինչպէս կամենաք:

ԼԻՐ
Խնդրում եմ, դո՛ւստր իմ. ինձ մի՛ խենթացնի,
Քեզ չեմ ձանձրացնի, դո՛ւստր, մնա՛ս բարով,
Այլեւս իրար մենք չենք հանդիպի,
Չենք տեսնի իրար, բայց այսուհանդերձ.
Դու իմ մարմինն ես, արիւնը, դուստրը,
Կամ, աւելի շուտ՝ ախտ իմ մարմնի մէջ,
Որ ստիպուած եմ իմը անուանել,
Դու մի պալար ես, ժանտախտի մի խոց,
Մի ուռած պզուկ՝ իմ ապականուած
Արիւնից ելած: Քեզ չեմ կշտամբում,
Թող ամօթը գայ, եթէ կամենայ...
Ես չեմ հրաւիրում: Ես չեմ աղերսում,
Որ շանթարգելը կայծակ տայ գլխիդ,
Եւ ոչ հատուցող դիցուհու մասին
Զրուցում քեզ հետ: Ուղղի՛ր քեզ, եթէ
Դեռ կարող ես դու, եղիր լաւագո՛յն,
Թէ ունես դու կամք. ես կհամբերեմ:
Ես Ռեգանի մօտ կարող եմ մնալ,
Միայն թէ՝ հարիւր իմ ասպետներով:

ՌԵԳԱՆ
Ո՛չ, բոլորովի՛ն, տէ՛ր իմ, ես դեռ
Չէի սպասում, որ ինձ մօտ կգաք.
Ես չեմ հոգացել ձեզ ընդունելու
Կարիքները դեռ: Տէ՛ր, ակա՛նջ դրէք
Քրոջս խօսքերին, դուք ծեր էք, տէ՛ր իմ,
Եւ քոյրս գիտէ, թէ ինչ է անում:

ԼԻՐ

Մի՞թէ վայել է այս ձեւով խօսել:

ՌԵԳԱՆ

Համարձակւում եմ ասել, որ այո՛:
Ի՞նչ, յիսուն ասպետ բաւական չէ՞ դեռ.
Ի՞նչ կարիք ունէք դրանից շատին,
Կամ հէնց այդքանին: Թէ՛ այդ մեծ ծախսը,
Եւ թէ՛ վտանգը ընդդէմ են խօսում
Այդքան մեծ թուի: Ինչպէ՞ս կարող է
Այդպիսի մի հոծ, ստուար բազմութիւն
Ապրել մի տան մէջ երկու հակադիր
Հրամանի ներքոյ. դա շատ դժուար է,
Անգամ՝ անհնար:

ԳՈՆԵՐԻԼ

Եւ ինչո՞ւ, տէ՛ր իմ,
Դուք չէք կամենում, որ ձեզ ծառայեն
Քրոջս կամ իմ ծառաները հէնց:

ՌԵԳԱՆ

Իհարկէ, տէ՛ր իմ, եւ այն ժամանակ
Թէ մէկը ձեր դէմ զանցառու լինէր՝
Մենք կարող էինք եւ պատժել նրան:
Թէ կամենում էք իմ տունը գալ դուք,
Աղաչում եմ ձեզ, որ ձեզ հետ բերէք
(Քանզի ես այժմ վտանգ եմ տեսնում)
Քսանհինգ հոգի. թէ գան աւելի՝
Մերժում եմ տեղ տալ կամ հիւրընկալել:

ԼԻՐ

Բայց ես ձեզ տուի ինչ որ ունէի...

ՌԵԳԱՆ

Եւ ժամանակն էր:

ԼԻՐ

Ես ձեզ կարգեցի
Իբրեւ պահապան եւ ժառանգ միակ,
Եւ ինձ պահեցի թիկնապահների
Փոքրաթիւ մի խումբ. ի՞նչ, քեզ մօտ գալիս
Այժմ քսաններից հոգո՞վ պիտի գամ.
Այդպէ՞ս ասացիր:

ՌԵԳԱՆ

Եւ կրկնում եմ այդ.
Մի հատ աւելի ես չեմ ընդունի:

ԼԻՐ

*(Նայելով Գոներիլին եւ Ռեգանին).*
Չար էակները լաւ են երեւում,
Երբ կան աւելի վատթար էակներ,
Եւ վատագոյնը չլինելն անգամ
Որոշ աստիճան գովելի է դեռ:
*(Գոներիլին).*
Ես քեզ մօտ կգամ, գոնէ յիսունը
Քսանեւհինգի կրկնապատիկն է.
Կրկնապատիկ եւ քո սէրն էլ՝ նրա
Սիրոյ մօտ:

ԳՈՆԵՐԻԼ

Տէ՛ր իմ, ի՞նչ կարիք կայ հէնց
Քսանեւհինգի կամ թէկուզ հինգի,
Որ ձեզ հետեւեն այնպիսի տան մէջ,
Ուր շատ աւելի սպասաւորներ
Հրամայուած են ձեզ ծառայելու:

ՌԵԳԱՆ

Այո, ի՞նչ կարիք հէնց մի ծառայի:

ԼԻՐ

Օ՛, ի՛նչ հարկ խօսել կարիքի մասին.

Ամենանուաստ մուրացկաններն իսկ
Իրենց ծայրայեղ աղքատութեան մէջ
Դարձեալ բան ունեն, որ աւելորդ է.
Մի՛ք տա բնութեանն աւելի, քան այն,
Ինչ նրա համար անհրաժեշտ է:
Մարդու ապրուստը նոյնքան աժան է,
Որքան գազանի ապրուստը, դու մի
Տիկին ես ահա, եւ եթէ ամբողջ
Քո շուքը տաքուկ հագնելը լինէր,
Դու երբէք կարիք չէիր ունենայ
Այդ պերճ զգեստին, որ հազիւ թէ քեզ
Պատսպարում է եւ տաք է պահում:
Բայց բուն կարիքը... օ՛, դուք, աստուածնե՛ր,
Համբերա՛նք տուէք, իմ բուն կարիքը
Համբերութիւնն է... Աստուածնե՛ր, դուք ինձ
Տեսնում էք ահա, մի խեղճ ծերունի,
Նոյնքան լի վշտով, որքան տարիքով,
Եւ երկուսում էլ նոյնքան տարաբախտ,
Թէ դուք էք դրդում այս աղջիկների
Սիրտը՝ իրենց ծեր եւ զառամ հօր դէմ,
Ինձ մի՛ դարձրէք այնքան անզգայ,
Որ ես հեզութեամբ հանդուրժեմ դրան,
Տոգորեցէ՛ք ինձ ազնիւ բարկութեամբ,
Թող արցունքները, զէնքն այդ կանացի,
Արատ չբերեն առնական դէմքիս.
Օ՛, ո՛չ, դուք անարգ հրէ՛շ-վհուկներ,
Պէտք է ձեզանից այնպիսի հզօր
Մի վրէժ հանեմ, որ արար աշխարհ...
Այնպիսի բաներ ես պիտի անեմ...
Թէ ինչ կլինի, չգիտեմ դեռ ես,
Բայց այդ վրէժը պէտք է, որ դառնայ
Ամբողջ աշխարհի ահ ու սարսափը:
Դուք կարծում էք, թէ ես լա՞ց կլինեմ,
Ո՛չ, լաց չեմ լինի...
Շատ պատճառ ունեմ ես արտասուելու,
Բայց հազար կտոր թող սիրտս լինի,

Նախքան արտասուեմ: Ո՛վ իմ խեղկատակ.
Ես կխենթանամ:

Դուրս են գնում Լիրը, Գլոստերը, Քէնտը եւ Խեղկատակը:

ԿՈՐՆՎԱԼ
Եկէք ներս գնանք:
Մրրիկ կլինի:

Մրրիկի հեռաւոր ձայն:

ՌԵԳԱՆ
Այս տունը փոքր է, իր շքախմբով
Չի կարող ծերուկն այստեղ բնակուել:

ԳՈՆԵՐԻԼ
Իր յանցանքն է այդ, ինքն իրեն զրկեց
Հանգստութիւնից. այժմ թող տուժէ
Նա իր խեղճութեամբ:

ՌԵԳԱՆ
Ես ուրախութեամբ
Նրան կընդունեմ, բայց՝ ո՛չ մի ծառայ:

ԳՈՆԵՐԻԼ
Իմ միտքն էլ այդ է: Ո՞ւր է Գլոստերը:

Գլոստերը կրկին գալիս է:

ԿՈՐՆՎԱԼ
Նա ընկերացաւ ծերուկին, սակայն
Ահա գալիս է:

ԳԼՈՍՏԵՐ
Արքան շատ սաստիկ բարկութեան մէջ է:

ԿՈՐՆՎԱԼ
Բայց ո՞ւր է գնում:

ԳԼՈՍՏԵՐ

Նա հրամայեց
Ձի նստել, սակայն չգիտեմ, թէ ուր:

ԿՈՐՆՎԱԼ

Աւելի լաւ է իր խելքին թողնել.
Ինքն է իր տէրը:

ԳՈՆԵՐԻԼ

*(Գլոստէրին).*

Կո՛մս, երբէք նրան
Չխնդրէք մնալ:

ԳԼՈՍՏԵՐ

Գիշերը, աւա՜ղ,
Վրայ է հասնում, եւ ցուրտ հողմերը
Հուզւում են ահեղ: Մղոններ հեռու
Այս շրջակայքում ոչ մի ծառ չկայ:

ՌԵԳԱՆ

Օ՜, կո՛մս, կամակոր խենթ մարդկանց համար
Այդ աղէտները պէտք է դաս լինեն:
Դուռը փակեցէ՛ք: Նա ունի իր հետ
Յանդուգն մի խումբ, նրանք կարող են
Բորբոքել նրան: Երբ նա ինքը հէնց
Հակուած է նման քայլեր անելու,
Խոհեմութիւնը պատուիրում է մեզ
Երկիւղ ունենալ:

ԿՈՐՆՎԱԼ

*(Գլոստէրին).*

Դուռը փակեցէ՛ք:
Սոսկալի՜ գիշեր: Ռեգանի խորհուրդը
Խոհեմ խորհուրդ է: Փախչե՛նք մրրիկից:

**Դուրս են գնում:**



# ԱՐԱՐՈՒԱԾ ԵՐՐՈՐԴ

## ՏԵՍԱՐԱՆ Ա.

**Մի մացառ: Մրրիկ՝ որոտի եւ կայծակի հետ**
**Մտնում են Քէնտը եւ մի ասպետ՝ հանդիպելով իրար:**

ՔԷՆՏ
Այդ ո՞վ է այդտեղ՝ բացի մրրիկից:

ԱՍՊԵՏ
Մէկը, ում հոգին մրրիկի պէս է.
Սաստիկ անհանգիստ:

ՔԷՆՏ
Ճանաչում եմ ձեզ, բայց ո՞ւր է արքան:

ԱՍՊԵՏ
Կռւում է ահեղ տարերքների դէմ.
Հրամայում է հողմին՝ երկիրը
Ձգել ծովի մէջ, կամ բարձրացնել
Ջրերն աւելի, քան թէ ցամաքը,
Որպէսզի ողջը փոխուի, խորտակուի,
Փետում է նա իր ճերմակ մազերը,
Որոնք հողմերը կոյր կատաղութեամբ
Բռնում են, ցրում, ոչնչացնում.

Ճգնում է մրցել ընդհարուող հողմի
Եւ ամձրեւի հետ: Նմաև գիշերում,
Երբ նոյնիսկ արջը՝ ցամաք ծծերով
Փակւում է որջում, երբ առիծն անգամ
Կամ քաղցած գայլը, պատառոտում են
Իրենց մուշտակը, նա վազվզում է
Մենակ, գլխաբաց, առանց գլխարկի՝
Հրաւիրելով ընդհանուր ջնջում:

ՔԷՆՏ

Բայց ո՞վ կա հետը:

ԱՍՊԵՏ

Իր խեղթը միայն,
Որ աշխատում է իր կատակներով
Փարատել նրա սրտահերձ վիշտը:

ՔԷՆՏ

Ձեզ ճանաչում եմ, պարո՛ն, եւ վստահ
Արդէն ունեցած այդ ծանօթութեամբ՝
Համարձակւում եմ ձեզ յանձնարարել
Սաստիկ կարեւոր մի ձեռնարկութիւն:
Մի պառակտում կա Ալբանի դուքսի
Եւ Կորնվալի միջեւ, որ նրանք
Թաքցնում են դեռ կեղծիքի ներքեւ.
Բայց նրանք ունեն սպասաւորներ
(Ինչպէս ամէն ոք, ում որ իր բախտը,
Մեծ դիրք է տուել եւ գահ իշխանի),
Որոնք Ֆրանսիայի արքայի համար
Հմուտ դիտողներ եւ լրտեսներ են.
Նրանք յայտնել են իրենց տեսածը՝
Դուքսերի ոխը, դաւերը գաղտնի
Եւ նրանց անգութ, դաժան վարմունքը
Մեր ծերուկ, բարի թագաւորի դէմ:
Դեռ կայ աւելի խորարմատ մի բան,
Որի նշաններն են սրանք գուցէ:

Սակայն Ֆրանսիայից զօրք է արշաւում
Այս անմիաբան պետութեան վրայ
Եւ զգուշութեամբ օգուտ քաղելով
Մեր թուլութիւնից՝ արդէն մտել է
Մեր ամենալաւ նաւահանգիստը,
Եւ շուտով արդէն բացայայտ կերպով
Դրօշ կպարզէ: Լսէ՛ք ուրեմն,
Եթէ կարող էք վստահանալ ինձ՝
Իսկոյն դէպի Դուվր ուղեւորուեցէ՛ք.
Այնտեղ կգտնէք մի անձ, որը ձեզ
Շատ շնորհակալ կլինի, երբ դուք
Ճշտութեամբ պատմէք, թէ թագաւորը
Ինչ անբնական եւ խենթացնող
Տառապանքների է դատապարտուած:
Ես մի բարետոհմ ազնուական եմ
Եւ գիտակցաբար ու վստահութեամբ
Յանձնարարում եմ այս պաշտօնը ձեզ:

ԱՍՊԵՏ

Լա՛ւ, մենք այդ մասին կրկին կխօսենք:

ՔԷՆՏ

Ո՛չ, աւելորդ է, իբրեւ ապացոյց,
Որ այն չեմ, ինչ որ իմ արտաքինն է,
Վերցրէ՛ք ահա այս քսակը ձեզ:
Երբ Կորդելիային տեսնէք (Դուք, անշուշտ,
Կտեսնէք նրան), տուէ՛ք այս օղը,
Եւ նա ձեզ կասի ով է այն անձը,
Որին տակաւին դուք չէք ճանաչում:
Բայց ի՛նչ մրրիկ է... Ես պէտք է գնամ
Գտնեմ արքային:

ԱՍՊԵՏ

Տուէ՛ք ձեր ձեռքը.
Արդեօք այլեւս ասելիք չունէ՞ք:

ՔԷՆՏ

Խօսք՝ շատ քիչ, բայց գործ շատ աւելի կայ,
Քան թէ արուած է: Գտնենք արքային.
Դուք այդ կողմ հիմա գնացէք, եւ՝ այս.
Ով առաջ գտնի՝ ձայն տայ միւսին:

**Զանազան կողմերից դուրս են գնում:**

## ՏԵՍԱՐԱՆ Բ.

**Մացառի մի այլ մասը**
**Մրրիկը շարունակւում է:**
**Մտնում են Լիրը եւ Խեղկատակը:**

ԼԻՐ

Փչեցէ՛ք հողմեր, եւ պայթեցրէ՛ք
Ձեր այտերն հիմա. փչեցէ՛ք հողմեր
Եւ կատաղեցէ՛ք:
Եւ դուք՝ հեղեղնե՛ր եւ փոթորիկնե՛ր,
Ճայթեցէ՛ք, մինչեւ ջրախեղդ անէք
Զանգակատներն ու հողմացոյցներն,
Դո՛ւք, մտքից արագ ծծումբի բոցե՛ր,
Եւ դո՛ւք, կաղնիհնե՛ր գետնահար անող
Շանթե՛ր, խանձեցէ՛ք գլուխս սպիտակ:
Եւ դո՛ւ, որոտմո՛ւնք ամէն ինչ ցնցող,
Զա՛րկ, հարթեցրո՛ւ հաստ երկրագունդը,
Փշրի՛ր բնութեան կաղապարները ողջ,
Կործանի՛ր մէկից բոլոր սերմերը,
Որոնք ծնում են ապերախտ մարդուն:

ԽԵՂԿԱՏԱԿ

Քե՛ռի, պալատում օրհնած ջուրն աւելի շատ է, քան այս անձրեւի ջուրը՝ պալատից դուրս: Տո՛ւն վերադարձիր, քեռի՛, եւ աղջիկներիցդ ողորմութի՛ւն խնդրիր: Ահա մի գիշեր, որ ո՛չ խելօքին է խնայում, ո՛չ անխելքին:

Կայծակ:

ԼԻՐ

*(Հայեացքը դէպի երկինք).*

Օ՛, գոռա՛ բոլոր քո աղիքներով,
Ժայթի՛ր, հո՛ւր տեղա, անձրեւ ու տարափ:
Անձրե՛ւ, փոթորի՛կ, փայլա՛կ ու կայծա՛կ
Իմ դուստրերը չէք: Դուք մեղաւոր չէք,
Ո՛վ անմեղ տարերք, անսիրութեան մէջ.
Թագաւորութիւն չեմ տուել ես ձեզ.
Ձեզ չեմ անուանել իմ զաւակները.
Դուք պարտաւոր չէք ինձ հնազանդել,
Թողէ՛ք ուրեմն թափուեն իմ գլխին
Որքան սոսկանքներ, որ կամենում էք.
Կանգնում եմ ահա ես՝ ձեր ստրուկը.
Մի հիւանդ, տխուր, անարգուած ծերուկ:
Բայց այսուհանդերձ պէտք է ձեզ կոչեմ
Նուաստ ծառաներ, որ միացրել էք
Երկու չարակամ աղջիկներիս հետ
Ձեր երկնածնունդ լեգէոնները
Մի ծեր գլխի դէմ այսքան սպիտակ:
Օ՛հ, սոսկալի՛ է:

ԽԵՂԿԱՏԱԿ

Ով որ տուն ունի իր գլուխը ծածկելու համար՝ մի լաւ գլխարկ ունի:

Երբ տաբատը տուն գտնի,
Նախքան գլուխն օթեւան,
Թէ՛ տաբատը, թէ՛ գլուխը
Ոջլանոցներ կդառնան:
Երբ կին առնի մի աղքատ,
Նա ոջիլներ կառնի շատ:
Ով որ անի ոտքի մատին,
Ինչ որ պիտի անէր սրտին,
Ախ կքաշէ ոտքի կոշտից,
Եւ չի քնի նա իր վշտից:

Որովհետեւ դեռ չի եղել մի գեղեցիկ կին, որ հայելու առջեւ իր դէմքը չծամածռէ:

Մտնում է Քէնտը:

ԼԻՐ

Ո՛չ, ես պէտք է լինեմ կատարեալ համբերութեան օրինակ, էլ ոչինչ չեմ ասի:

ՔԷՆՏ

Ո՞վ է այդտեղ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Մի վեհափառ տէր եւ մի տաբատ, այսինքն մի խելօք եւ մի խենթ:

ՔԷՆՏ

Տէ՛ր իմ, այստե՞ղ էք, գիշեր սիրողներն
Այսպիսի գիշեր չեն սիրում երբէք:
Զայրացած երկինքն ահաբեկել է
Նոյնիսկ խաւարում բնակողներին,
Որոնք փակուել են իրենց որջերում:
Իմ ծնուած օրից չեմ տեսել երբէք
Այսպիսի ահեղ լայնասփիւռ կայծակ,
Չեմ լսել նման սոսկալի որոտ,
Այսպիսի մռունչ հողմ ու անձրեւի.
Մարդու բնոյթը չի կարող տոկալ
Նման սոսկանքի եւ արհաւիրքի:

ԼԻՐ

Թող աստուածները, որ կուտակել են
Այս սեւ ժխորը մեր գլխի վրայ,
Որոնեն իրենց թշնամիներին:
Դողա՛ դու, թշուա՛ռ, որ ունես քո մէջ
Անպատիժ թողած անյայտ ոճիրներ.
Ծածկի՛ր քեզ, ո՛վ ձեռք արիւնաշաղախ,

Եւ դու ուխտադրո՛ւժ, եւ դու կեղծաւո՛ր,
Դու արտաքինով համեստ շնացո՛ղ,
Եւ դու, անզգա՛մ, ջարդուփշուր եղի՛ր.
Դու, որ հնարած դիմակի ներքոյ
Դաւեր ես նիւթել մարդու կեանքի դէմ.
Ո՛վ դուք, խորախոր թաքցուած մեղքե՛ր,
Ճեղքեցէ՛ք հիմա ձեր ծածկոցները
Եւ այն սոսկալի դատախազներից
Ներո՛ւմ հայցեցէք: Իսկ ես մի մարդ եմ՝
Ոչ թէ կեղեքող, այլ սոսկ կեղեքուած:

ՔԷՆՏ

Աւա՜ղ, գլխաբաց, վեհաշուք իմ տէ՛ր,
Այս շրջակայքում կայ փոքրիկ մի հիւղ.
Մարդասէր մի մարդ ձեզ այս մրրիկից
Ապաստան կտայ: Մնացէ՛ք այստեղ,
Կրկին կգնամ այն դաժան տունը,
Առաւել դաժան, քան իր քարերը,
Ուր մի քիչ առաջ ձեզ որոնելիս
Ինձ մուտք չտուին: Նորից կգնամ,
Եւ նրանց ժլատ հիւրասիրութիւնն
Բռնի կստանամ:

ԼԻՐ

Խելքս այլայլւում է:
*(Խեղկատակին).*
Եկ այստեղ, տղա՛ս, ինչպէ՞ս ես, տղա՛ս.
Մրսո՞ւմ ես արդեօք, ես էլ եմ մրսում:
*(Քէնտին).*
Ո՞ւր է հիւղն, ա՛յ մարդ:
Զարմանալի է կարիքը, երբ մարդ
Չնչին բաներին մեծ յարգ է տալիս:
Տեսնենք քո հիւղը: Դու խե՜ղճ, թշուառ խե՛նթ,
Կա իմ սրտի մէջ մի մաս տակաւին,
Որ խղճում է քեզ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Ով որ գլխում քիչ խելք ունի,
Անձրեւ ու հողմ որքան էլ գայ՝
Նա իր բախտից գոհ կլինի,
Քանզի անձրեւ ամէն օր կայ:

ԼԻՐ

Ճշմարիտ է, տղա՛ս: *(Քէնտին).* Դէ եկ, տա՛ր մեզ քո հիւղը:

**Լիրն ու Քէնտը դուրս են գնում:**

ԽԵՂԿԱՏԱԿ

Սքանչելի գիշեր է, որ կարող է նոյնիսկ պոռնիկ կնոջ չեր-մը զովացնել: Գնալուց առաջ պէտք է մի մարգարէութիւն անեմ:

Երբ տէրտէրներն գործով լինեն ամոքիչ,
Գարեջրի մէջ ջուր խառնեն երբ որ քիչ,
Իշխանները դերձակներին երբ դաս տան,
Արդար լինի երբ ամենայն դատաստան,
Երբ որ այրեն հերձուածողի փոխարէն
Նրանց, ովքեր պոռնկութիւն արարեն,
Երբ ասպետներն այլեւս պարտք չունենան,
Բամբասողներ երբ աշխարհում չմնան,
Վաշխառուներ երբ աշխարհում չլինեն
Եւ պոռնիկները տաճարներ երբ հիմնեն,
Այնժամ անշուշտ պետութեան մէջ Ալբիոնի
Մեծ շփոթում, իրարանցում կլինի,
Ով որ ապրի՝ նա կտեսնի օր վսեմ,
Երբ որ մարդիկ ոտքով քայլել կսկսեն:

Այս մարգարէութիւնը պէտք է Մերլինը անէր, որովհետեւ ես ապրում եմ նրանից շատ առաջ:

**Դուրս է գնում:**

## ՏԵՍԱՐԱՆ Գ.

**Գլոստէրի ամրոցում**

**Մտնում են Գլոստէրը եւ Էդմոնդը:**

ԳԼՈՍՏԷՐ

Աւա՜ղ, աւա՜ղ, Էդմո՛նդ, ես չեմ սիրում այս հակաբնական վերաբերմունքը: Երբ ես Լիրի աղջիկներց հրաման խնդրեցի իրենց հօրը ողորմելու համար, նրանք ինձանից խլեցին իմ սեփական տան իրաւունքը եւ իրենց սիրալիր վերաբերմունքից ինձ ընդմիշտ զրկելու սպառնալիքով արգելեցին, որ մի անգամ էլ նրա մասին չխօսեմ, չբարեխօսեմ, ոչ էլ որեւէ ձեւով նրան օգնեմ:

ԷԴՄՈՆԴ

Չափազանց վայրենի եւ հակաբնական մի բան:

ԳԼՈՍՏԷՐ

Դու լաւ է՝ բան չխօսես: Դուքսերի մէջ անհամաձայնութիւն կայ, եւ որ աւելի վատ է՝ ես այս գիշեր մի նամակ եմ ստացել. վտանգաւոր է այդ մասին խօսել: Ես նամակը պահել եմ իմ պահարանում: Այս բոլոր անարգանքների համար, որ թագաւորն այժմ հանդուրժում է, անպատճառ վրէժ կհանուի: Արդէն բանակի մի մասը ցամաք է ելել. մենք պէտք է անցնենք թագաւորի կողմը: Ես ուզում եմ որոնել նրան եւ գաղտնի կերպով օգնութիւն հասցնել: Դու գնա՛ դուքսի հետ զրոյց արա, որպէսզի նա չնկատի իմ այս գթասրտութիւնը: Եթէ իմ մասին հարցնի՝ կասես հիւանդ է, անկողին է մտել: Եթէ իմ սեփական աչքերով մահս տեսնեմ, որով արդէն ինձ սպառնացել են, ես այնուամենայնիւ պէտք է օգնեմ իմ թագաւորին, իմ հին տիրոջը: Մի տարօրինակ բան է պատրաստւում, Էդմո՛նդ, խնդրում եմ խոհե՛մ եղիր:

**Դուրս է գնում:**

ԷԴՄՈՆԴ

Այդ գրութիւնը արգելուած է քեզ.
Եւ իսկոյն դուքսին ես իմաց կտամ,
Կյայտնեմ նաեւ նամակի մասին:
Դա վարձատրութեան արժանի գործ է,
Եւ ես դրանով պէտք է ձեռք բերեմ,
Ինչ որ իմ հայրը կորցնում է արդ:
Այսինքն՝ ամբողջը: Երիտասարդը
Վեր է բարձրանում, երբ ծերն ընկնում է:

**Դուրս է գնում:**

## ՏԵՍԱՐԱՆ Դ.

**Մացառի մի մասը. մի փոքրիկ հիւղ**
**Մտնում են Լիրը, Քէնտը եւ Խեղկատակը:**

ՔԷՆՏ

Այստեղ է, տէ՛ր իմ, ազնիւ տէ՛ր, մտէ՛ք:
Անծածկ գիշերուայ բռնակալութիւնն
Այնքան է դաժան, որ ոչ մի էակ
Չի կարող տոկալ:

**Մրրիկը շարունակւում է:**

ԼԻՐ

Թո՛ղ ինձ:

ՔԷՆՏ

Բարի տէ՛ր,
Նե՛րս մտէք, խնդրեմ:

ԼԻՐ

Մի՞թէ ուզում ես սիրտս պատառել:

ՔԷՆՏ

Աւելի եւս կուզէի, որ իմ սիրտը պատառուէր: Նե՛րս մտէք, տէ՛ր իմ:

ԼԻՐ

Քեզ խիստ է թւում, որ այս մրրիկը
Ներս է թափանցում մինչ ոսկորներս.
Բայց ուր մեծագոյն մի ցաւ է խրուել,
Փոքրագոյնն այնտեղ անզգալի է:
Երբ խոյս ես տալիս արջից, քեզ եթէ
Փախուստդ ծովի ափը հասցնէ,
Ետ կգաս կրկին արջի բերանը:
Եթէ հանգիստ է հոգին՝ մարմինը
Քնքուշ է. հոգուս մրրիկն ինձանից
Խլում է ամէն զգացողութիւն,
Բացի այն, որ իմ մէջ է տրոփում:
Ա՛խ, որդիական ապերախտութի՛ւն,
Նոյնը չէր լինի, եթէ բերանս
Կծէր այս ձեռքը, որ նրան միայն
Սնունդ է տանում: Բայց ես կպատժեմ.
Ո՛չ, չեմ ուզում լալ: Այս պէս գիշերով
Ինձ դու՛րս վռնդել: Թափուեցէ՛ք, հոգ չէ,
Ես կհանդուրժեմ: Նման գիշերով...
Ռեգա՛ն, Գոների՛լ, ձեր բարի հայրը,
Որի վեհ սիրտը բաշխեց ամէն ինչ...
Օ՛հ, կարող է մարդ խելքը կորցնել.
Խոյս տամ դրանից. էլ վե՛րջ այդ մասին:

ՔԷՆՏ

Է՛հ, բարի տէ՛ր իմ, նե՛րս մտէ՛ք այստեղ:

ԼԻՐ

Դո՛ւ ներս գնա, դու հոգա քո՛ վրայ.
Այս փոթորիկը արգելում է ինձ
Խորհել այնպիսի բաների մասին,
Որ կարող են ինձ աւելի տանջել:

Բայց հոգ չէ, մտնե՛նք:
*(Խեղկատակին).*
Նե՛րս մտիր, տղա՛ս: Նախ դո՛ւ ներս մտիր,
Ո՛վ անտուն աղքատ: Հիմա դո՛ւ մտիր:
Պէտք է աղօթեմ եւ ապա քնեմ:

**Խեղկատակը մտնում է հիւղը:**

Խե՛ղճ, մե՛րկ աղքատներ, ուր էլ որ լինէք,
Սեւ, ժանտ մրրիկից հալածուած, տանջուած,
Ինչպէ՞ս կարող էք ձեր անտուն գլխով
Եւ ձեր սովալլուկ մերկ ստամոքսով
Եւ պատառոտուն ցնցոտիներով
Ձեզ պատսպարել այսպիսի օդից:
Օ՛, ես այդ մասին քիչ եմ մտածել.
Դե՛ղ խմիր հիմա, ո՛վ շռայլութիւն,
Կրի՛ր մի անգամ, ինչ որ կրում են
Չքաւորները, որ դու էլ թափ տաս
Քո աւելորդը խեղճերի համար,
Եւ ցոյց տաս նրանց գէթ մի աւելի
Ողորմած երկինք:

ԷԴԳԱՐ
*(Հիւղի ներսից).*
Կանգնուն եւ կէս, կանգնուն եւ կէս, խեղճ Տո՛մ:

**Խեղկատակը սարսափած փախչում է հիւղից:**

ԽԵՂԿԱՏԱԿ
Ներս մի՛ մտնիր, քեռի՛, այնտեղ դեւ կայ: Օգնեցէ՛ք, օգնեցէ՛ք:

ՔԵՆՏ
Տո՛ւր ձեռքդ ինձ: Ո՞վ կայ այստեղ:

ԽԵՂԿԱՏԱԿ
Դեւ է, դեւ է, ասում է՝ անունս աղքատ Տոմ է:

ՔԵՆՏ

*(Հիւղի դռան առջեւ).*

Ո՞վ ես դու արդեօք, որ մռմռում ես.
Այդտեղ՝ յարդի մէջ: Առա՛ջ եկ, տեսնեմ:

**Մտնում է Էդգարը՝ խեղկատակի հագուստով:**

ԷԴԳԱՐ

Հեռո՛ւ, չար ոգին ինձ հալածում է...
Մորենու միջից ցուրտ հողմ է փչում.
Հը՛մ, գնա՛, մտի՛ր սառն անկողինդ
Եւ քեզ տաքացրո՛ւ:

ԼԻՐ

Դու է՞լ ես տուել
Քո ունեցածը երկու դուստրերիդ
Եւ այս օրն ընկել:

ԷԴԳԱՐ

Ո՞վ մի բան կտայ աղքատ Տոմին, որին չար դեւը շրջում է կրակի եւ բոցի, ծանծաղուտի եւ հորձանքի միջով, ճախճի եւ մորուտի վրայով: Նա դանակներ դրեց նրա բարձի տակ, խեղդելու պարաններ նրա նստարանի ներքեւ, մկնդեղ խառնեց նրա ապուրին, հպարտացրեց նրա սիրտը, նրան ստիպեց կարմիր ձի նստած՝ աշտանակել չորս մատ լայնութիւն ունեցող կամրջի վրայով, որպէսզի բռնի իր ստուերը, որին չար դեւը դաւաճան էր ձեւացրել: Աստուած օրհնէ հինգ զգայարաններդ: Տոմը մրսում է, ա՛յ դուդի, դուդի, դուդի... Տէրը քեզ փրկէ՛ փոթորիկներից, չար աստղերից, չարքի զարկից: Ողորմութի՛ւն արէք աղքատ Տոմին, որին տանջում է չար դեւը: Հիմա կբռնեմ նրան այստեղ, եւ այնտեղ, եւ այնտեղ եւ կրկին այնտեղ եւ այնտեղ:

**Մրրիկը շարունակւում է:**

ԼԻՐ

Դուստրե՞րն են նրան այս օրը գցել:
Բան չպահեցի՞ր, բոլո՞րը տուիր:

ԽԵՂԿԱՏԱԿ

Ո՛չ, գոնէ մի ծածկոց պահել է իր համար, եթէ ոչ, բոլորս կամաչէինք:

ԼԻՐ

Այժմ այն բոլոր պատուհասները,
Որոնք կախուած են մեր գլխի վերեւ,
Որպէս օրհասանք մարդկանց մեղքերի,
Քո աղջիկների գլխին թող տեղան:

ՔԷՆՏ

Նա աղջիկ չունի:

ԼԻՐ

Մա՛հ քեզ, դաւաճա՛ն...
Ոչինչ չէր կարող հասցնել նրան
Այս նուաստութեան, բացի ապերախտ
Իր աղջիկներից: Մի՞թէ օրէնք է
Այժմ, որ բոլոր վանուած հայրերի
Մարմինը այսքան տառապանք կրի.
Արդար պատիժ է, չէ՞ որ հէնց այդ նոյն
Մարմինն է ծնել այն պելիկանի
Չար աղջիկներին:

ԷԴԳԱՐ

Պելիկոկը նստել էր Պելիկոկ բլրի վրայ: Հա՛լլու, հա՛լլու, լո՛ւ, լո՛ւ, լո՛ւ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Այս ցուրտ գիշերը մեզ բոլորիս խենթ ու խեղկատակ կդարձնի:

ԷԴԳԱՐ

Զգուշացի՛ր չար դեւից, հնազանդի՛ր ծնողներիդ, խօսքդ ճի՛շտ պահիր, մի՛ երդուիր, մի՛ մեղանչիր ուրիշ մարդու օրինաւոր կնոջ հետ, սիրուհուդ մի՛ զարդարիր շքեղ զարդերով: Ցուրտ մրսում է:

ԼԻՐ

Դու ո՞վ ես եղել:

ԷԴԳԱՐ

Կանանց եռեւից քարշ եկող մի պարոն, հոգով եւ սրտով այնքան հպարտ, որ մազերս գանգուր էի դարձնում, ձեռնոցներ էի կրում գլխարկիս մէջ, ծառայում էի սիրուհուս սրտի տարփանքին եւ նրա հետ միասին կատարում էի խաւարի գործը, այնքան էի երդւում, որքան բառեր արտասանում եւ բեկանում էի երդումներս գթած երկնի առջեւ. քնում էի ցոփութիւններ հնարելով եւ արթնանում էի, որ դրանք ի կատար ածեմ, գինին շատ էի սիրում, դրամախաղը՝ սաստիկ, իսկ կանանց խնդրում գերազանց էի տաճկից: Սրտով կեղծ, ականջներով՝ դիւրահաւան, ձեռքով՝ արնաշաղախ, ծուլութեամբ՝ խոզ, գողութեան մէջ՝ աղուէս, անկշտութեան մէջ՝ գայլ, կատաղութեան մէջ՝ շուն, յափշտակութեան մէջ՝ առիւծ: Մի՛ թող, որ կօշիկի ճռճռոցը կամ մետաքսի խշշոցը խեղճ սիրտդ կնոջ գերին դարձնեն: Ոտքդ հեռո՛ւ պահի պոռնկատներից, ձեռքդ՝ կանանց շրջազգեստից եւ գրիչդ՝ վաշխառուի տետրից եւ ապա, խրոխտացի՛ր չար դեւի դէմ: Փշենու միջից դաժան ցուրտ հողմ է փչում. ասում է՝ սո՜ւմմ մո՜ւն: Հէ՜յ, նոննի, Դոլֆին, որդիս, բաց՝ թող գայ, անցնի:

*Մրրիկը շարունակւում է:*

ԼԻՐ

Քեզ համար աւելի լաւ է գետնի տակ պառկած լինէիր, քան այդպէս տկլոր շրջէիր մրրիկի ներքոյ: Մի՞թէ սա է մարդը, մարդ եւ ուրիշ ոչինչ: Լա՛ւ նայեցէք նրան, նա չունի ո՛չ գազանի մորթ, ո՛չ շերամի մետաքս, ո՛չ էլ ոչխարի բուրդ: Ահա

մենք երեք հոգի ենք այստեղ, մենք խարդախուած ենք, դու ես իսկականը: Անպաճոյճ մարդը ոչինչ է, եթէ ոչ մի այսպիսի խեղճ, մերկ, երկճղանի անասուն, ինչպէս դու: *(Պատռելով իր զգեստները)*. Դո՛ւրս, դո՛ւրս, պանուճանքնե՛ր, դո՛ւրս, ցա՛ծ եկէ՛ք իմ վրայից:

ԽԵՂԿԱՏԱԿ

Խնդրեմ, քեռի՛, մի՛ անիր, շատ վատ գիշեր է լողանալու համար: Մի փոքրիկ կրակն այս ընդարձակ դաշտում կնմանուէր մի շնացող ծերուկի ցոփամէր սրտին, մի փոքրիկ կայծ, իսկ մարմնի մնացած մասը՝ սառած: Նայի՛ր, ահա մի շրջմոլիկ կրակ:

ԷԴԳԱՐ

Սա այն չար դեւ ֆիլիբբերտիջիբետն է, որ սկսում է փայլել. մայրամուտից յետոյ եւ շրջում է մինչեւ աքաղաղի առաջին կանչը, նա տալիս է մարդու աչքի կատարակտ, շլութիւն եւ նապաստակի շուրթ, նա է փտեցնում սպիտակ ցորենը եւ վնասում աշխարհիս խեղճ արարածներին:

Երեք անգամ սուրբ Վիթոլդը
Դաշտ ու անտառ թափառեց
Եւ հանդիպեց Մղձաւանջին,
Որ ինն ընկեր ունէր մեծ,
Հրամայեց, որ հեռանայ,
Երդուեցրեց չար դեւին,
Դէ՛ հեռացի՛ր դու հիմա,
Չքացի՛ր, մի՛ հետեւիր:

ՔԷՆՏ

Ինչպէ՞ս է ձերդ մեծութիւնը:

**Մտնում է Գլոստերը՝ ջահը ձեռքին:**

ԼԻՐ

Ո՞վ է այդ:

ՔԷՆՏ

Ո՞վ ես, ի՞նչ ես փնտրում:

ԳԼՈՍՏԷՐ

Ովքե՞ր էք այստեղ, ձեր անունն՛ը:

ԷԴԳԱՐ

Խե՛ղճ Տոմ, որ ուտում է լողացող գորտ, լպրծուն գորտնուկ, պատի խլէզ, ջրի խլէզ. որ իր սրտի կատաղութեան պահին, երբ չար դեւը տանջում է նրան՝ կովի թրիք է ուտում աղցանի փոխարէն, կուլ է տալիս պառաւ մուկ կամ սատկած շուն, խմում է ճախճախուտի կանաչ փրփուր, որ մտրակով հալածում է տեղից տեղ, ոտքերը կոճղի մէջ են դրում, պատժում է, բանտարկւում է, ունեցել է երեք զոյգ զգեստ, վեց շապիկ, ձի՝ հեծնելու համար եւ զէնք՝ կրելու համար:

Տոմն ուտում էր միայն մկներ,
Փոքրիկ վայրի կենդանիներ,
Եօթը երկար տարիներ:

Զգուշացի՛ր ինձ հալածողից, հանդա՛րտ կաց, Սմո՛լքին, հանդա՛րտ, դե՛ւ:

ԳԼՈՍՏԷՐ

Ի՞նչ, ձերդ մեծութիւնը սրանից լաւ ընկերներ չունի՞:

ԷԴԳԱՐ

Խաւարի իշխանն ազնուական է:

ԳԼՈՍՏԷՐ

Տէ՛ր, մարմինը մեր եւ մեր արիւնը
Մինչ այն աստիճան ապականուել են,
Որ ծառս են լինում ծնողի հանդէպ:

ԷԴԳԱՐ

Տոմը մրսում է:

ԳԼՈՍՏԷՐ

*(Լիրին).*

Տո՛ւն եկէք ինձ հետ.
Առ ձեզ ունեցած անհուն յարգանքս

Թոյլ չի տալիս ինձ ամէն մի բանում
Լսել ձեր դստերց հրամաններին:
Ինձ հրամայեցին դռները փակել
Եւ թոյլ տալ, որ այս դաժան գիշերը
Խուժէ ձեզ վրայ, բայց, այնուհանդերձ,
Ես յանդգնեցի գալ, որոնել ձեզ
Եւ ձեզ տուն տանել, ուր կգտնէք դուք
Յարկ եւ կերակուր:

ԼԻՐ

*(Ցոյց տալով Էդգարին).*

Թողէք եւ առաջ
Այս իմաստունից մի բան հարցնեմ:
*(Էդգարին).*
Ի՞նչ է որոտման պատճառը:

ՔԷՆՏ

Տէ՛ր իմ,
Ընդունեցէք նախ իր հրաւէրը.
Գնանք նրա մօտ:

ԼԻՐ

Թող մի բան ասեմ
Այս թեբայեցի ուսումնականին.
Ի՞նչ ուսում ունես:

ԷԴԳԱՐ

Քշել դեւերին, ջարդել ճիճուներ:

ԼԻՐ

Եկէք առանձին ձեզ մի բան ասեմ:

ՔԷՆՏ

*(Գլոստէրին).*

Կրկին խնդրեցէ՛ք, որ գնայ, տէ՛ր իմ.
Խելքը խառնւում է:

ԳԼՈՍՏԵՐ

Նա մեղաւոր չէ.
Իր աղջիկները մահն են ցանկանում.
Ա՛հ, բարի Քէնտը նախագուշակեց
Այս ամէնը... Խե՜ղճ աքսորական մարդ:
Ասում ես՝ արքան խելագարւում է.
Ասեմ, բարեկամ, որ ես էլ մօտ եմ
Խելագարութեան. ես էլ ունէի
Մի որդի, որին այժմ իմ տոհմից
Ես արտաքսել եմ, նա վերջերս հէնց
Կեանքիս դէմ դաւեց: Բարեկա՛մ, նրան
Շատ էի սիրում, ոչ մի հայր որդուն
Այնքան չի սիրել, որքան ես նրան:
Ճշմարիտն ասեմ՝ այդ կսկիծն է հէնց
Ինձ խելքից հանել: Ի՜նչ գիշեր է այս:

Մրրիկը շարունակւում է:

*(Լիրին).*
Պաղատում եմ ձեզ, ձե՛րդ մեծութիւն...

ԼԻՐ

Ներեցէ՛ք, պարո՛ն. ես պէտք է մնամ
Այստեղ, այս ազնիւ իմաստունի հետ:

ԷԴԳԱՐ

Տոմը մրսում է:

ԳԼՈՍՏԵՐ

*(Էդգարին).*
Նե՛րս գնա, ա՛յ մարդ, այն հի՛ւղը գնա,
Տաքացի՛ր այնտեղ:

ԼԻՐ

Բոլորս մտնենք:

ՔԵՆՏ

*(Ամրոցի ճանապարհը ցույց տալով).*

Այս կողմից, միլո՛րդ:

ԼԻՐ

Սա էլ պէտք է գայ,

Ես չեմ բաժանուի փիլիսոփայից:

ՔԵՆՏ

*(Գլոստէրին).*

Տէ՛ր իմ. տեղի տուէք, թոյլ տուէք իր հետ

Սրան էլ բերի:

ԳԼՈՍՏԷՐ

*(Քէնտին).*

Դրա՛ն էլ բերէք:

ՔԵՆՏ

Դու էլ եկ, ա՛յ մարդ, եկ գնա՛նք մեզ հետ:

ԼԻՐ

Գնա՛նք, բարեկիրտ իմ աթենացի՛:

ԳԼՈՍՏԷՐ

Զգոյշ, ոչ մի բառ, ոչ մի բառ: Սը՜սս…

ԷԴԳԱՐ

*(Երգում է).*

Երբ պալյազատ Ռոլանդը
Եկաւ այն սեւ բերդի մօտ,
Ասաց՝ թո՛ւ, թո՛ւ, զգում եմ
Բրիտանացու արեան հոտ…

**Դուրս են գնում:**

## ՏԵՍԱՐԱՆ Ե.

**Գլոստէրի ամրոցը**
**Մտնում են Կորնվալը եւ Էդմոնդը:**

ԿՈՐՆՎԱԼ
Այս ամրոցից գնալուց առաջ պէտք է վրէժս հանեմ:

ԷԴՄՈՆԴ
Բայց, միլո՛րդ, ինձ կարող են պարսաւել, որ ես այսպիսով իմ որդիական պարտքը զոհում եմ հաւատարմութեան: Մի բան, որ ինձ սարսափեցնում է, երբ մտածում եմ այդ մասին:

ԿՈՐՆՎԱԼ
Հիմա ես տեսնում եմ, որ եղբայրդ լոկ չար բնաւորութիւնից դրդուած չէ, որ ուզում էր հօրն սպանել: Հօր նենգութիւնը աւելի եւս գրգռում էր որդու պարսաւելի չարութիւնը:

ԷԴՄՈՆԴ
Որքա՜ն անբախտ եմ, որ պէտք է զղջամ արդար լինելու համար: Ահա այն նամակը, որով ապացուցւում է, որ նա գիտակցաբար Ֆրանսիայի շահերին նուիրուած մի կուսակից էր: Օ՛, երկինք, երանի՛ այդ դաւաճանութիւնը կատարուած չլինէր, կամ գէթ ինքս չլինէի այդ մասին յայտնողը:

ԿՈՐՆՎԱԼ
Ե՛կ ինձ հետ դքսուհու մօտ:

ԷԴՄՈՆԴ
Եթէ այս նամակի բովանդակութիւնը ճիշտ լինի, դուք ահագին գործ կունենաք կատարելու:

ԿՈՐՆՎԱԼ
Սուտ թէ ճիշտ, բայց դա՛ քեզ դարձրեց Գլոստէրի կոմս: Տեղեկացի՛ր՝ հայրդ որտեղ է, որ կարողանանք հեշտութեամբ բռնել նրան:

ԷԴՄՈՆԴ

*(Առանձին)*. Եթէ ես նրան գտնեմ թագաւորին օգնելիս՝ դա աւելի կուժեղացնի կասկածը: *(Բարձրաձայն)*. Ես կշարունակեմ իմ հաւատարիմ ընթացքը, որքան էլ պայքարը մեծ լինի պարտանանաչութեան եւ հարազատութեան միջեւ:

ԿՈՐՆՎԱԼ

Ես կատարեալ վստահութիւն կտածեմ դէպի քեզ, եւ դու իմ սիրոյ մէջ կգտնես մի աւելի սիրող հայր:

**Դուրս է գնում:**

## ՏԵՍԱՐԱՆ Զ.

**Մենեակ մի ագարակի տան մէջ**

**Մտնում են Գլոստէրը, Լիրը, Քէնտը, Խեղկատակը, Էդգարը:**

ԳԼՈՍՏԷՐ

Այստեղ աւելի լաւ է, քան բաց երկնքի տակ, գոհութեամբ ընդունեցէք այս պատսպարանը: Ես կաշխատեմ աւելացնել, ինչ որ կարող եմ եւ յարդարել մի հանգիստ բնակարան: Իսկոյն կվերադառնամ ձեզ մօտ:

**Դուրս է գնում:**

ՔԷՆՏ

*(Գլոստէրին)*. Նրա մէջ առողջ դատողութիւնը տեղի է տուել յուսահատութեան առաջ: Թող աստուածները վարձատրեն ձեր բարեսրտութիւնը:

ԷԴԳԱՐ

Ֆրատէրէտտօն ինձ կանչում է եւ ասում է, թէ Ներոնը գործ է որսում դժոխքի վարար լճում: Աղօթի՛ր, անմե՛ղ, եւ զգուշացի՛ր չար դեւից:

ԽԵՂԿԱՏԱԿ

Խնդրեմ, քեռի՛, ասա՛ ինձ՝ խելագարն ազնուակա՞ն է, թէ՞ ռամիկ:

ԼԻՐ

Թագաւո՛ր է, թագաւո՛ր:

ԽԵՂԿԱՏԱԿ

Ո՛չ, ռամիկ է, որ մի ազնուական որդի ունի, որովհետեւ խելագար է այն ռամիկը, որ իր որդուն իրենից առաջ ազնուական է դարձնում:

ԼԻՐ

Ա՛խ, հազար, հազար դժնի հոգինե՛ր,
Թեժ շամփուրներով եւ շվշվոցով
Տանջէ՛ին նրանց:

ԷԴԳԱՐ

Ա՛խ այն չար դեւը մէջքս կծում է:

ԽԵՂԿԱՏԱԿ

Խենթ է՝ ով որ հաւատ է ընծայում գայլի հեզութեանը, ձիու ամբակներին, պատանու սիրոյն կամ պոռնիկի երդումին:

ԼԻՐ

Դէ, վճռուած է՝ նրանց ուղղակի
Դատի կկանչեմ:
*(Էդգարին).*
Հմո՛ւտ դատաւոր:
*(Խեղկատակին).*
Իսկ դու, իմաստո՛ւն, եկ, այստե՛ղ բազմիր:
Հիմա դո՛ւք եկէք, դո՛ւք, էգ աղուէսնե՛ր:

ԷԴԳԱՐ

Տե՛ս, ինչպէս կանգնած աչքերն է ոլորում: Աչքո՞վ ես անում մարդկանց դատի ժամանակ, տիկի՛ն:
Եկ ինձ մօտ, Բէ՛սի, անցի՛ր գետակից:

ԽԵՂԿԱՏԱԿ
Նրա մակոյկը ծակ ունի տակից,
Եւ նա չի կարող պատճառը յայտնել,
Թէ ինչու քեզ մօտ չի կարող անցնել:

ԷԴԳԱՐ

Չար դեւն աղքատ Տոմին հալածում է սոխակի ձայնով: Հոպդանսը ճչում է Տոմի փորի մէջ եւ երկու սպիտակ ձուկ է ուզում: Մի՛ կռնչա, սեւ հրեշտակ, ես քեզ համար ուտելիք չունեմ:

ՔԷՆՏ

*(Լիրին).*

Ինչպէ՞ս էք, տէ՛ր իմ: Մի՛ կանգնէք այդպէս
Ապշած, շուարած, պառկեցէ՛ք այստեղ,
Այս բարձի վրայ քիչ հանգստացէ՛ք:

ԼԻՐ

Նախ պէտք է տեսնեմ ես դատաստանը
Նրանց. կանչեցէ՛ք, դէ, վկաներին:
*(Էդգարին).*
Դու արդարութեան զգեստաւոր մա՛րդ,
Նստի՛ր քո տեղը:
*(Խեղկատակին).*
Դո՛ւ, նրա ընկե՛ր եւ պաշտօնակի՛ց,
Նստի՛ր նրա մօտ:
*(Քէնտին).*
Դուք էլ նստեցէ՛ք, իբր մի անդամ
Այս դատարանի:

ԷԴԳԱՐ

Թող արդար դատենք.

Ո՛վ ուրախ հովիւ, քնե՞լ ես արդեօք,
Թէ՞ արթուն ես դու.
Քո ոչխարները շրջում են արտում,
Բայց բաւական է, որ փչես քնքուշ՝

Վտանգից նրանք կազատուեն անշուշտ:
Փը՛ռռ. կատուն գործ է...

ԼԻՐ

Առաջ սրա՛ն խաչեցէք, սա Գոներիլն է: Ես երդուելով վկայում եմ, որ նա քացիով խփեց իր հօրը՝ թագաւորին:

ԽԵՂԿԱՏԱԿ

Առա՛ջ եկէք, տիկի՛ն. ձեր անունը Գոների՞լ է:

ԼԻՐ

Նա չի կարող այդ ուրանալ:

ԽԵՂԿԱՏԱԿ

Ներողութիւն, ես ձեզ մի նստարան կարծեցի:

ԼԻՐ

Ահա եւ միւսը, որի չար աչքերն
Ցայտնում են, թէ սիրտն ինչ խմորից է:
Կանգնեցէ՛ք այդտեղ, զէ՞նք. զէ՞նք, սո՛ւր, կրա՛կ.
Այստե՞ղ էլ կաշառք: Դու, կեղծ դատաւո՛ր,
Ինչո՞ւ թոյլ տուիր, որ նա խուսափի:

ԷԴԳԱՐ

Օրհնուին քո հինգ զգայարանքը:

ՔԷՆՏ

Օ՛, ցաւալի է: Ո՞ւր է, տէ՛ր արքայ,
Ձեր այնքան սիրած համբերութիւնը,
Որով շարունակ պարծենում էիք:

ԷԴԳԱՐ

*(Առանձին).*

Վախենում եմ, որ կարեկցութիւնից
Արցունքներս ահա կսկսեն յորդել
Եւ փչացնել դէմքիս դիմակը:

ԼԻՐ

Փոքրիկ շնիկներն ամբողջ երամով
Հաչում են վրաս...

ԷԴԳԱՐ

Տոմն իր գլուխը կգցի նրանց առաջ. դո՛ւրս կորէք, դո՛ւրս. քուսոտ շնե՛ր:

Սեւ լինէք, թէ սպիտակ,
Կամ կծելու ընդունակ,
Գամփո, մետիս մի քուսոտ,
Որսկան, բարակ, թէ քոթոթ,
Անպոչ լինէք, թէ պոչոտ,
Կվնգստաք Տոմի մօտ:
Գլուխս ձեզ կնետեմ
Եւ կփախչէք չորեքոտ:

Դուդի՛, դուդի՛, հա՛յդէ, քայլենք դէպի տօնավաճառներ եւ շուկայ ունեցող քաղաքները: Խե՛ղճ Տոմ, եղջիւրդ դա-տարկ:

ԼԻՐ

Ուրեմն թող անդամահատեն Ռեգանին եւ տեսնեն, թէ ի՛նչ կայ նրա սրտի մօտ: Արդեօ՞ք կայ մի բնական պատճառ, որ այդ սրտերն այդպէս կարծրացնում է: *(Էդգարին).* Ձեզ, պա-րո՛ն, ես ընդունում եմ իմ հարիւրեակի մէջ. միայն թէ չեմ սի-րում ձեր հագուստի ձեւը: Գուցէ դուք կասէք, թէ դա Պարս-կաստանի տարազ է, բայց լաւ կլինի, որ փոխէք:

ՔԷՆՏ

Դէ, ազնիւ տէ՛ր, պառկեցէ՛ք այստեղ եւ մի քիչ հանգստա-ցէք:

ԼԻՐ

Աղմուկ մի՛ հանէք, մի՛ աղմկէք, վարագոյրները քաշէ՛ք. այսպէս, այսպէս, այսպէս, առաւօտեան մենք կընթրենք: Այս-պէս, այսպէս, այսպէս:

ԽԵՂԿԱՏԱԿ
Իսկ ես անկողին կմտնեմ կէսօրին:

Կրկին մտնում է Գլոստէրը:

ԳԼՈՍՏԷՐ
Այստե՛ղ եկ, բարեկամ, ո՞ւր է թագաւորը, իմ տէրը:

ՔԷՆՏ
Այստե՛ղ է, տէ՛ր իմ, բայց մի՛ անհանգստացրէք նրան, նրա խելքը թռել է:

ԳԼՈՍՏԷՐ
Խնդրեմ, բարեկա՛մ, պահպանի՛ր նրան.
Ծածուկ լսեցի, որ դաւ են նիւթում
Նրա կեանքի դէմ: Այստեղ կայ ահա
Մի փակ պատգարակ. դի՛ր նրան այնտեղ
Եւ տար մինչեւ Դուվր, ուր դու կգտնես
Հիւրընկալութիւն եւ պաշտպանութիւն:
Փրկի՛ր տիրոջդ. թէ կէս ժամ անգամ
Ուշանաս՝ էլ քեզ եւ ոչ էլ նրան,
Եւ ոչ էլ նրա պաշտպաններին
Փրկութիւն չկայ. վերցրո՛ւ նրան,
Դէ շո՛ւտ, վերցրո՛ւ եւ հետեւի՛ր ինձ.
Ես իսկոյն կտամ քեզ այլ պիտոյքներ:

ՔԷՆՏ
Յոգնած բնութիւնն անզօր քնած է,
Գուցէ այս նինջը բալասան լինի
Քո այդ խորտակուած գիտակցութեանը,
Բայց թէ դէպքերը քունդ խանգարեն՝
Բժշկութիւնը դժուար կլինի:
*(Խեղկատակին).*
Եկ, օգնի՛ր դու էլ՝ տիրոջդ տանենք:
Դու էլ պէտք է գաս:

ԳԼՈՍՏԵՐ

Դէ, եկէ՛ք գնանք:

**Դուրս են գնում՝ տանելով թագաւորին:**

ԷԴԳԱՐ

*(Մենակ).*

Երբ տեսնում ենք մենք, որ մեր մեծերը
Նոյն ցաւերն ունեն, էլ չենք մտածում,
Որ մեր վշտերը անտանելի են.
Ով որ մենակ է թշուառութեան մէջ,
Առաւել եւս տառապում է նա՝
Տեսնելով շուրջը բարեբախտների,
Վառ երջանկութիւն, որ իր համար չէ.
Բայց շատ ցաւերի յաղթում է հոգին,
Երբ նրա վիշտը ընկերներ ունի:
Որքա՜ն իմ վիշտը թեթեւ է այժմ
Եւ հանդուրժելի, երբ տեսնում եմ ես,
Որ նոյնը, ինչ ինձ ստիպում է արդ
Իմ մէջքը ծռել, թեքում է մէջքը
Նաեւ այս բարի, խեղճ թագաւորի:
Նա թշուառ հայր է, ես՝ թշուառ որդի:
Տո՛մ, գնա՛ այժմ եւ ուշքդ լարի՛ր
Մեծ աղմուկներին: Եւ այն ժամանակ
Յայտնուի՛ր նորից, երբ կեղծ կարծիքը,
Որ քեզ ստութեամբ վարկաբեկել է,
Քո անմեղութեամբ վերադարձնէ
Անկեղծ պատիւդ: Թող ինչ որ կուզէ
Լինի այս գիշեր, միայն թէ արքան
Խոյս տալ կարենայ այս փորձանքներից:
Թաքնուե՛նք, տեսնե՛նք:

**Դուրս է գնում:**

## ՏԵՍԱՐԱՆ Է.

**Գլոստէրի ամրոցը**
**Մտնում են Կորնվալը, Ռեգանը, Գոներիլը, Էդմոնդը եւ սպասաւորներ:**

ԿՈՐՆՎԱԼ

*(Գոներիլին).* Շտապեցէ՛ք իսկոյն ձեր ամուսնու մօտ, ցո՛յց տուէք նրան այս նամակը. Ֆրանսիայի բանակն արդէն ցամաք է դուրս եկել: *(Ծառաներին).* Փնտրեցէ՛ք այն դաւաճան Գլոստէրին:

**Մի քանի ծառաներ դուրս են գնում:**

ՌԵԳԱՆ

Իսկոյն կախեցէ՛ք նրան:

ԳՈՆԵՐԻԼ

Աչքե՛րը հանեցէք:

ԿՈՐՆՎԱԼ

Դուք յանձնեցէ՛ք նրան իմ բարկութեանը: Էդմո՛նդ, ուղեկի՛ց եղէք մեր քրոջը: Յարմար չէ, որ դուք տեսնէք այն պատիժները, որ մենք պարտաւոր ենք տալ ձեր դաւաճան հօրը: Խորհո՛ւրդ տուէք դուքսին, որի մօտ էք գնում, որ ամենայն փութով պատրաստութիւն տեսնի. մենք էլ պատրաստ ենք նոյնը անելու: Մեր սուրհանդակները պէտք է արագաշարժ լինեն եւ մեզ իրարից լուր հասցնեն: Գնա՛ք բարով, սիրելի քո՛յր: Գնա՛ք բարով, միլորդ Գլո՛ստէր:

**Մտնում է Օսվալդը:**

Ի՞նչ լուր կայ, ո՞ւր է թագաւորը:

ՕՍՎԱԼԴ

Տէ՛ր,
Միլորդ Գլոստէրը նրան այստեղից

Հանել է տունել: Իր երեսունհինգ
Ասպետների հետ եւ մեր միլորդի
Ծառաների հետ իրար միացած՝
Բոլորը միասին Դուվր գնացին,
Ուր, հոխորտում են, որ պիտի գտնեն
Զինեալ օգնութիւն:

КОРНУАЛ

Զի՛ն բերել տուր

Տիրուհուդ համար:

ԳՈՆԵՐԻԼ

Գնա՛ք բարով, դո՛ւքս իմ,

Գնա՛ք բարով, իմ քո՛յր:

**Գոներիլը եւ Էդմոնդը դուրս են գնում:**

ԿՈՐՆՎԱԼ

Գնա՛ս բարով, Էդմո՛նդ.

Գնացէ՛ք, բերէ՛ք այդ նենգ Գլոստերին:
Թեւերը կապէ՛ք մի գողի նման,
Բերէ՛ք մեր առջեւ: Թէեւ չենք կարող
Մենք առանց դատի ձեռք զարկել կեանքին,
Բայց թող խոնարհուի իշխանութիւնը
Մեր ցասման առջեւ, որը պարսաւել
Կարող են մարդիկ, սակայն ոչ սանձել:
Ո՞վ, դաւաճա՞նն է:

**Ներս են գալիս ծառաները՝ բերելով Գլոստերին:**

ՌԵԳԱՆ

Ապերախտ շո՞ւնն է:

ԿՈՐՆՎԱԼ

Ամուր կապեցէ՛ք այդ չոր թեւերը:

ԳԼՈՍՏԵՐ
Ի՞նչ էք կամենում, ձե՛րդ բարձրութիւն.
Ո՛վ բարեկամներ, խորհեցէ՛ք գոնէ,
Որ դուք իմ հիւրն էք, մի՛ անպատուէք ինձ,
Իմ բարեկամնե՛ր:

ԿՈՐՆՎԱԼ
Կապեցէ՛ք իսկոյն:

Գլոստէրին կապում են:

ՌԵԳԱՆ
Պի՛նդ, պի՛նդ կապեցէ՛ք, օ՛, պիղծ դաւաճան:

ԳԼՈՍՏԵՐ
Անողո՛րմ տիկին, ես դաւաճան չեմ:

ԿՈՐՆՎԱԼ
Կապեցէ՛ք նրան այս բազկաթոռին,
Ծո՛ւն, դեռ կտեսնես...

Ռեգանը փետում է նրա մօրուքը:

ԳԼՈՍՏԵՐ
Երկի՛նքը վկայ,
Անազնիւ գործ է մօրուքս փետել:

ՌԵԳԱՆ
Այսպէս սպիտակ եւ այսպէս մատնի՛չ:

ԳԼՈՍՏԵՐ
Չարասի՛րտ տիկին, իմ այս մազերը,
Որ իմ կզակից փետում ես այսպէս,
Կկենդանանան՝ կմեղադրեն քեզ:
Ձեր հիւրընկալն եմ. գողի ձեռքերով
Պէտք չէ գզէիք հիւրասէր դէմքս:
Ի՞նչ էք կամենում:

ԿՈՐՆՎԱԼ

Դէ ասա՛, ո՛վ մարդ,
Ի՞նչ նամակներ են, որ ստացել ես
Քո Ֆրանսիայից:

ՌԵԳԱՆ

Մի՛շտ պատասխանիր,
Քանզի մենք գիտենք ճշմարտութիւնը:

ԿՈՐՆՎԱԼ

Եւ ի՞նչ կապ ունես մատնիչների հետ,
Որ այս վերջերս ցամաք են ելել
Այս պետութեան մէջ:

ՌԵԳԱՆ

Որոնց մօտ արդէն
Դու ուղարկել ես ցնդած արքային:
Խօսի՛ր:

ԳԼՈՍՏԵՐ

Մի նամակ ստացել եմ ես,
Եւ կան նրա մէջ կարծիքներ միայն,
Այն էլ մի անձից, որ չէզոք մարդ է
Եւ ոչ թշնամի:

ԿՈՐՆՎԱԼ

Նենգութի՛ւն:

ՌԵԳԱՆ

Կեղծի՛ք:

ԿՈՐՆՎԱԼ

Ո՞ւր ուղարկեցիր արքային դու:

ԳԼՈՍՏԵՐ

Դուվր:

ՌԵԳԱՆ
Ինչո՞ւ համար Դուվր, քեզ չարգելեցի՞ն...

ԿՈՐՆՎԱԼ
Ինչո՞ւ համար Դուվր, առաջ ա՛յդ ասա:

ԳԼՈՍՏԵՐ
Կապուած մի ցցի՝ պէտք է պաշտպանուեմ
Մի ողջ ոհմակից...

ՌԵԳԱՆ
Ինչո՞ւ համար Դուվր:

ԳԼՈՍՏԵՐ
Օ՛, որովհետեւ չուզեցի տեսնել,
Որ քո անողորմ այդ եղունգները
Փորեն ծերուկի խղճուկ աչքերը:
Որ վայրագ քոյրդ կատուի ժանիքներ
Չմխէ այն սուրբ, օծեալ մարմնի մէջ:
Օ՛, ինչ մրրիկ էր (եւ նա գլխաբաց
Դժոխքի պէս սեւ այդ գիշերուայ մէջ՝
Հանդուրժեց դրան), այնպիսի մրրիկ,
Որ ծովն ուզում էր կարծես բարձրանալ՝
Ջրահեղձ անել բոյլը աստղերի,
Այնինչ, խե՛ղճ ծեր սիրտ, ինքն էլ երկնքին
Օժանդակում էր, որ յորդ անձրեւի:
Եթէ գայլերը այդ ժանտ ժամանակ
Գային, ոռնային քո դռան առաջ՝
Կասէիր՝ «Դէ բա՛ց, բա՛ց դռնապան»,
Եւ բոլոր ուրիշ անողորմները
Տեղի կտային: Օ՛, պէտք է տեսնեմ
Արդար վրէժը, երբ նա խոյանայ
Ձեր նման անգութ դուստրերի վրայ:

ԿՈՐՆՎԱԼ
Դու այդ չես տեսնի: Տղե՛րք, աթոռը

Ամո՛ւր բռնեցէք: Պէտք է կոխոտեմ
Ես այդ աչքերը:

**Գլոստէրին պառկեցնում են գետնին, եւ նա կրունկներով կոխոտում է մի աչքը, դուրս է հանում:**

ԳԼՈՍՏԷՐ
Ով որ յոյս ունի ծերութեան հասնել,
Օգնութեան թող գայ: Անգո՛ւթ: Անաստուա՛ծ:

ՌԵԳԱՆ
Մէկը ծաղրում է միւսին, միւսն էլ:

ԿՈՐՆՎԱԼ
Եթէ դու տեսնես վրէժխնդրութիւն...

ՄԻ ԾԱՌԱՅ
Կա՛նգ առէք, միլո՛րդ, իմ մանկութիւնից
Ծառայել եմ ձեզ, բայց դեռ չեմ արել
Աւելի վսեմ մի ծառայութիւն,
Քան ստիպելով, որ դուք այդ չանէք:

ՌԵԳԱՆ
Ի՞նչ ասել է, շո՛ւն:

ԾԱՌԱՅ
Թէ ունենայիր
Մօրուք կզակիդ՝ այնպէս ցնցէի...
Այդ ի՞նչ ես անում...

ԿՈՐՆՎԱԼ
Ստրո՛ւկ, շո՛ւն:

**Սուրը քաշելով՝ յարձակւում է ծառայի վրայ:**

ԾԱՌԱՅ
Լաւ, որ այդպէս է, դէ եկ ու փորձի՛ր
Բարկութեան բախտը:

**Մենամարտում են, Կորնվալն ընկնում է:**

ՌԵԳԱՆ
*(Մի այլ ծառայի).*
Տո՛ւր ինձ քո սուրը,
Մի ստրուկ այսքան յանդուգն լինի:

**Ետեւից մօտենալով՝ սպանում է ծառային:**

ԾԱՌԱՅ
Օ՜հ, սպանուեցի: Միլո՛րդ, ձեզ մնաց
Մի աչք, որ տեսնէք այն պատուհասը,
Որ իջնելու է դեռ նրա գլխին:

ԿՈՐՆՎԱԼ
Որ էլ չտեսնի՝ թող առաջն առնենք:

**Միւս աչքն էլ է հանում:**

Դո՛ւրս, անարգ ծնո՛ւնդ, այժմ ո՞ւր է փայլդ:

ԳԼՈՍՏԵՐ
Ամէն ինչ խաւար եւ անյուսութիւն:
Ա՜խ Էդմո՛նդ, որդիս, ո՛վ Էդմոնդ, վառի՛ր
Բոլոր կայծերը քո բնութեան մէջ,
Որ վրէժն հանես այս անգութ գործի:

ՌԵԳԱՆ
Դո՛ւրս կորիր, մատնի՛չ, կանչում ես մէկին,
Որ ատում է քեզ. նա է մեզ յայտնել
Քո մատնութիւնը, նա խիստ բարի է
Քեզ նմաններին խղճալու համար:

ԳԼՈՍՏԵՐ

Խելագարութի՛ւն, ուրեմն Էդգարը
Անմեղ է եղել…
Բարի աստուածնե՛ր, ներեցէ՛ք ինձ այդ
Եւ տուէ՛ք նրան բարեբախտութիւն:

ՌԵԳԱՆ

Դէ իսկոյն նրան դո՛ւրս վռնդեցէք,
Թող հոտոտելով այժմ մինչեւ Դուվր
Ճանապարհ փնտրէ: Բայց ի՞նչ է, միլո՛րդ,
Ի՞նչու ձեր դէմքը փոխւում է այդպէս:

ԿՈՐՆՎԱԼ

Վէրք եմ ստացել, ինձ հետ եկ, տիկի՛ն.
Դո՛ւրս վռնդեցէք այդ սրիկային,
Աղբի՛ մէջ նետէք այդ ծեր ստրուկին,
Ռեգա՛ն, արիւնս շատ յորդ է հոսում,
Ծատ անժամանակ եղաւ այս վէրքը.
Տո՛ւր ինձ բազուկդ:

**Դուրս է գնում՝ յենուած Ռեգանին:**
**Ծառաները Գլոստէրին դուրս են տանում:**

Բ. ԾԱՌԱՅ

Թէ բարի լինի այդ մարդու վերջը՝
Ես չեմ վախենայ ամէն տեսակի
Մեղքեր գործելուց:

Գ. ԾԱՌԱՅ

Եթէ այդ կինը
Երկար կեանք տեսնի եւ վերջը մեռնի
Ծերութեան մահով՝ էլ բոլոր կանայք
Հրէշ կդառնան:

Բ. ԾԱՌԱՅ

Հետեւենք կոմսին եւ գնանք փնտրենք
Բէղլամի խենթին, որ նրա համար
Ուղեցոյց լինի՝ դէպի ուր կուզէ:

Գ. ԾԱՌԱՅ

Դու գնա՛, իսկ ես մի զգեստ գտնեմ
Եւ մի քանի հատ ձուի սպիտակուց՝
Խեղճի արիւնոտ երեսի համար:
Երկի՛նքը նրան օգնական լինի:

**Զանազան կողմերից դուրս են գնում:**





# ԱՐԱՐՈՒԱԾ ՉՈՐՐՈՐԴ

## ՏԵՍԱՐԱՆ Ա.

**Բաց դաշտ**
**Մտնում է Էդգարը:**

ԷԴԳԱՐ
Դարձեալ այս է լաւ՝ ապրել սեփական
Կամքով՝ կրելով հոգս ու անարգանք,
Քան միջավայրում շողոքորթների
Քարշ տալ եղկելի գոյութիւն յաւէտ:
Բախտից անարգուած ամենից ստոր
Արարածն անգամ դեռ մի յոյս ունի
Եւ ապրում է դեռ երկիւղից ազատ:
Թէ կայ ողբալի մի փոփոխութիւն՝
Երջանիկների համար է դա լոկ,
Դժբախտը չունի եւ ոչ մի պատճառ
Սարսելու բախտի փոփոխութիւնից:
Ուրեմն ողջո՛յն քեզ, հո՛ղմ անպտուղ,
Այն չքաւորը, որին քշելով
Դու թաւալեցիր անյուսութեան մէջ
Եւ պարտք չմնաց քո մրրիկներին:
Բայց ո՞վ է գալիս:

**Մտնում է Գլոստէրը՝ մի ծերունու ուղեկցութեամբ:**

Հա՛յրս… Այնքան խեղճ մի ուղեկցի հետ:

Օ՛, աշխարհ, աշխարհ, եթէ անհելի
Փորձութիւնները քո չստիպեցին
Գարշել քեզանից՝ էլ չէր տալ տեղի
Կեանքը տարիքի կամ մահու առջեւ:

ԾԵՐՈՒԿ

Ո՜վ իմ բարի տէր, մի՞թէ ես չեմ ծառայել ձեզ եւ ձեր հօրը ամբողջ ութսուն տարի:

ԳԼՈՍՏԵՐ

Գնա՛, հեռացի՛ր, բարի՛ մարդ, գնա՛,
Քո օգնութիւնը անօգուտ է ինձ,
Քեզ՝ վնասակար:

ԾԵՐՈՒԿ

Տեսնել չէք կարող
Ձեր ճանապարհը:

ԳԼՈՍՏԵՐ

Ճանապարհ չունեմ.
Ուրեմն աչքերի կարիք էլ չունեմ,
Երբ աչք ունէի՝ ոտքս սայթաքեց:
Անուշադիր ենք դառնում յաճախ
Բնութեան տուած միջոցները մեզ,
Թերութիւնները սակայն հեշտութեամբ
Դառնում են յաճախ մեզ աջակիցներ:
Օ՛, իմ սիրելի որդի, իմ Էդգա՛ր,
Որ զոհ դարձար քո հօր զազամտութեան.
Եթէ ապրէի այնքան, որ մի օր
Տեսնէի քեզ իմ շօշափելիքով,
Կասէի, որ իմ աչքերը ահա
Բացուել են կրկին:

ԾԵՐՈՒԿ

Է՜յ, հէ՜յ, այդ ո՞վ է:

ԷԴԳԱՐ

*(Առանձին).*

Ո՜վ իմ աստուածներ: Կարո՞ղ է արդեօք
Մարդն ասել, թէ նա իր դժբախտութեան
Գագաթն է հասել: Այժմ ես ահա
Դժբախտ եմ, քան թէ եղել եմ երբէք:

ԾԵՐՈՒԿ

Խեղճ աղքատ Տոմն է:

ԷԴԳԱՐ

*(Առանձին).*

Տակաւին վատթար կարող եմ լինել:
Դժբախտութիւնը դեռ չի հասել իր
Գագաթնակէտին, մինչեւ որ մարդը
Կարենայ ասել, թէ՝ այս է ահա
Ամենից վատը:

ԾԵՐՈՒԿ

Ո՞ւր ես գնում, մա՛րդ:

ԳԼՈՍՏԷՐ

Դա մուրացկա՞ն է:

ԾԵՐՈՒԿ

Մուրացկան եւ խենթ:

ԳԼՈՍՏԷՐ

Քիչ խելք դեռ ունի, եթէ ոչ երբէք
Չէր կարող անգամ մուրացկան լինել:
Անցեալ գիշերուայ այն մրրիկի մէջ
Ես տեսայ մի մարդ այսպիսիներից
Եւ մտածեցի, որ որդ է մարդը,
Ապա յիշեցի իմ որդուն կորած,
Բայց այն ժամանակ իմ միտքը նրան
Թշնամի էր դեռ: Բայց այնուհետեւ

Շատ բան լսեցի: Ինչպէս ճանճերը
Մանկանց ձեռքերում, այնպէս ենք եւ մենք
Աստուածների մօտ: Կատակի համար
Սպանում են մեզ:

ԷԴԳԱՐ

*(Առանձին).*

Ո՞նց է պատահել...
Ինչ դժուար արուեստ՝ տրտմութեան առջեւ
Խաղալ խենթի դեր եւ վիրաւորել
Թ՛է՛ ուրիշներին եւ թէ՛ ինքդ քեզ:
*(Բարձր).*
Օրհնեալ լինես, տէ՛ր:

ԳԼՈՍՏԷՐ

Այն մերկ մա՞րդն է սա:

ԾԵՐՈՒԿ

Այո, տէ՛ր:

ԳԼՈՍՏԷՐ

Ուրեմն՝ խնդրում եմ, գնա՛:
Եւ թէ կարող ես յանուն իմ սիրոյ՝
Մի երկու մղոն այստեղից հեռու,
Դուվրի չաւղի մօտ հասի՛ր մեզ նորից
Եւ, ի սէր քո հին անձնուիրութեան,
Բե՛ր մի նոր ծածկոց այս մերկի համար,
Որին կխնդրեմ ինձ առաջնորդել:

ԾԵՐՈՒԿ

Տէ՛ր իմ, նա խենթ է:

ԳԼՈՍՏԷՐ

Ժամանակների պատուհասն է այդ.
Այժմ կոյրերին առաջնորդում են
Խելագարները, իմ ասա՛ծն արա,

Եւ կամ, մանաւանդ, արա՛ ինչ կուզես,
Միայն հեռացի՛ր:

ԾԵՐՈՒԿ

Ես նրա համար
Պէտք է լաւագոյն հագուստը բերեմ,
Ինչ կուզէ լինի:

ԳԼՈՍՏԵՐ

Ի՛նձ նայիր, մե՛րկ մարդ:

ԷԴԳԱՐ

Տոմը մրսում է:
*(Առանձին).*
Սրանից աւել
Չեմ կարող կեղծել:

ԳԼՈՍՏԵՐ

Եկ այստեղ, ա՛յ մարդ:

ԷԴԳԱՐ

*(Առանձին).*
Բայց հարկաւոր է:
*(Բարձր).*
Օրհնուած լինեն
Քո աչքերը, տէ՛ր, արիւն են հոսում:

ԳԼՈՍՏԵՐ

Դու գիտե՞ս արդեօք Դուվրի ճանապարհը:

ԷԴԳԱՐ

Այո, պատի վրայով էլ, դռնով էլ, ձիու ճանապարհ եւ ոտքի ճանապարհ: Աղքատ Տոմը վախից գժուել է: Աստուած քեզ փրկէ՛ չար սատանայից, բարի մարդու որդի՛: Հինգ դեւ միանգամից մտել են խեղճ Տոմի մէջ. անառակութեան դեւը՝ Օբիդիկուտ, համրութեան իշխանը՝ Հոբբիդիդանս, գողութեան իշխանը՝ Մահու, մարդասպանութեանը՝ Մօդօ եւ Ֆլիբէրտիժիբ-

բէտ՝ ծամածռութեան դէպը, որ այժմ իշխում է աղախիններին եւ սպասուհիների վրայ: Ուրեմն օրհնեա՛լ լինես, տէ՛ր:

ԳԼՈՍՏԵՐ

Ա՛ռ այս քսակը, դու, որին երկնի
Պատուհասները ճնշել են այսքան,
Ամէն հարուածի ենթակայ արել.
Իմ դրութիւնը բախտ է քեզ համար,
Այսպէս վարուեցէ՛ք, աստուածնե՛ր, մեզ հետ,
Թողէ՛ք, որ հարուստ, յղփացած մարդը,
Որ աչք է փակում արդարութեան դէմ,
Որ ձեր պատուիրանն արհամարհում է,
Թողէ՛ք նա զգայ զօրութիւնը ձեր,
Որպէսզի նա նոր դառնայ ընդունակ
Իր ունեցածը խեղճի հետ կիսել,
Եւ ամէն մի մարդ կունենայ այնքան,
Որքան ունի պէտք: Բայց գիտե՞ս արդեօք
Դէպի Դուվր տանող ճանապարհը դու:

ԷԴԳԱՐ

Այո, տէ՛ր, գիտեմ:

ԳԼՈՍՏԵՐ

Մի ժայռ կայ այնտեղ,
Որի բարձրաբերձ եւ թեք գլուխը
Ահեղ նայում է ծովի յորձանքին:
Դու տա՛ր ինձ միայն նրա եզերքը.
Ես կբարուոքեմ թշուառ վիճակդ
Մի շատ թանկ բանով, որ ունեմ ինձ մօտ:
Այնտեղ որ հասայ՝ էլ առաջնորդի
Ես կարիք չունեմ:

ԷԴԳԱՐ

Տո՛ւր ինձ քո ձեռքը,
Չքաւոր Տոմը քեզ կառաջնորդէ:

**Դուրս են գնում:**

## ՏԵՍԱՐԱՆ Բ.

**Ալբանի դուքսի պալատը**
**Մտնում են Գոներիլը եւ Էդմոնդը:**

ԳՈՆԵՐԻԼ
Բարեւ ձեզ, միլո՛րդ, ես զարմանում եմ,
Որ ամուսինս չեկավ ընդառաջ:

**Մտնում է Օսվալդը:**

Լաւ, ո՞ւր է տէրդ:

ՕՍՎԱԼԴ
Տանն է, տիրուհի՛.
Ոչ մի մարդ այդպէս չի փոխուել սակայն:
Իր հետ խօսեցի ցամաք դուրս եկած
Բանակի մասին, նա ժպտաց միայն:
Նրան ասացի, որ դուք գալիս էք.
«Աւելի վատ» ինձ նա պատասխանեց.
Իսկ երբ խօսեցի Գլոստէրի արած
Մատնութեան մասին եւ նրա որդու
Հաւատարմութեան, տխմար կոչեց ինձ
Եւ ասաց ապա, որ աստառը ես
Երես եմ շինել: Ինչ պէտք է նրան
Վատ թուար սատաչ. արդ դուր է գալիս,
Ինչ պէտք է դուր գար՝ այժմ անախորժ է:

ԳՈՆԵՐԻԼ
*(Էդմոնդին).*
Եւ մի՛ք գա առաջ: Նա ամօթահար
Երկչոտութեան է անձնատուր եղել.
Եւ չի յանդգնում մի բան ձեռնարկել.
Նա անզգայ է անարգանքների,
Որ հատուցում են ահեղ պահանջում:

Այն բաղձանքները, որ ճանապարհին
Ցայտնում էինք մենք՝ կարող են դառնալ
Իրականություն: Ե՛տ դարձէք, Էդմոնդ,
Իմ եղբորս մոտ, արագացրէ՛ք
Զորահավաքը նրա զորքերի,
Առաջնո՛րդ դարձէք նրա գնդերին,
Այստեղ ես ինքս զէնք կվերցնեմ,
Իսկ նրա ձեռքը ես իլիկ կտամ:
*(Օսվալդին մատնանիշ անելով).*
Այս հավատարիմ ծառան կլինի
Միջնորդ մեզ համար. եւ շատ չի անցնի,
Որ դու կլսես սիրուհու կամքը՝
Եթէ բավական յանդուգն լինես
Քո օգտի համար:
*(Տալով նրան մի յիշատակ).*
Ա՛ռ, կրի՛ր դու այս,
Մի՛ խօսիր ոչինչ. ցա՛ծ բեր գլուխդ:
*(Համբուրում է նրան).*
Թէ այս համբոյրը լեզու ունենար,
Քեզ թռիչք կտար մինչեւ եթերը.
Հասկացի՛ր դու այս եւ գնա՛ վստահ.
Բարի յաջողում...

ԷԴՄՈՆԴ

Ես ձերն եմ ցմահ:

ԳՈՆԵՐԻԼ

Օ՛հ, իմ սիրելիս:

**Էդմոնդը գնում է:**

Որքա՜ն տարբեր են մարդիկ իրարից.
Քեզ է վայելում սէրը մի կնոջ,
Իսկ իմ տխմարը յափշտակում է
Մարմինը:

ՕՍՎԱԼԴ

Տիկի՛ն, դուքսը գալիս է:

**Մտնում է Ալբանի դուքսը:**

ԳՈՆԵՐԻԼ

Գոնէ սուլոցի արժանի եմ ես:

ԱԼԲԱՆԻ

Աւա՛ղ, Գոներիլ, դու արժանի չես
Անգամ այն փոշուն, որ բուռն հողմը
Փչում է դէմքիդ: Ես սարսափում եմ
Քո խորհուրդներից: Այն բնութիւնը,
Որ անարգում է իր ծագումն անգամ,
Չի կարող զսպուել ոչ մի պատուարով:
Մի ոստ, որ ինքը պոկւում է բնից
Եւ զրկում իրեն հիւթից մայրական,
Կխամրի անշուշտ եւ պէտք կգայ լոկ
Չար գործի համար:

ԳՈՆԵՐԻԼ

Բա՛ւ է, խե՛նթ խօսքեր:

ԱԼԲԱՆԻ

Իմաստութիւնը եւ բարութիւնը
Անարգների մօտ անարգ են թւում.
Գարշութիւնն է լոկ, որ նրանց համար
Քաղցր համ ունի: Ինչե՛ր արիք դուք.
Վագրե՛ր, ոչ դուստրեր, ինչե՛ր գործեցիք.
Մի հայր, մի բարի եւ հէգ ծերունի,
Այնքան վեհաշուք, որ շղթայակապ
Արջն անգամ նրա ոտքը կլիզէր,
Դուք, բարբարոսնե՛ր, այլասերուածնե՛ր,
Խենթութեան դուռը նրան հասցրիք:
Ինչպէ՞ս թոյլ տուեց բարի եղբայրս,
Որ դուք այդ անէք. մի մարդ, մի իշխան,

Որին նա այնքան բարիքներ արաւ։
Եթէ երկինքը չուղարկէ շուտով
Իր տեսանելի պաշտօնեաներին
Այս յանցանքները պատժելու համար,
Կգայ ժամանակ, երբ մարդիկ իրար
Կսկսեն ուտել օվկիանոսի
Հրէշների պէս։

ԳՈՆԵՐԻԼ

Երկչո՛տ արարած,
Որ այտեր ունես ապտակի համար,
Իսկ անարգանքի համար՝ խեղճ գլուխ,
Որ չունես գէթ աչք՝ պատիւն ամօթից
Զանազանելու, որ չես իմանում,
Թէ տխմարներն են լոկ խղճում նրանց,
Որոնք պատժւում են նախքան կարենան
Չարիքը գործել։ Ո՞ւր է քո սուրը։
Ֆրանսիան պարզել է իր դրօշները
Մեր խաղաղ երկրում, եւ քո թշնամին
Մի ցցունազարդ սաղաւարտ գլխին՝
Սպառնում է քեզ… իսկ դու, խելագա՛ր,
Նստել ես հանգիստ, փիլիսոփայում
Եւ աղաղակում՝ «ինչո՞ւ է աւա՛ղ,
Նա այսպէս անում»։

ԱԼԲԱՆԻ

Դու քե՛զ նայիր, դե՛ւ. տգեղութիւնը
Այնքան սոսկալի չէ մի դեւի մէջ,
Որքան կնոջ մէջ։

ԳՈՆԵՐԻԼ

Օ՛հ, անմիտ տխմար։

ԱԼԲԱՆԻ

Ո՛վ այլասերուած դիմածածկ էակ,
Ամաչի՛ր կրել հրէշային դէմք,

Թէ պատշաճ լինէր, որ ձեռքերն իմ այս
Հպատակուէին յուզուած արիւնիս՝
Ես պատրաստ էի միսդ յօշոտել
Եւ ոսկորներդ պոկել իրարից:
Որքան էլ, սակայն, դու մի դեւ լինես՝
Կանացի դէմքը պաշտպանում է քեզ:

ԳՈՆԵՐԻԼ
Վա՛հ, խիզախացար...

**Մտնում է մի սուրհանդակ:**

ԱԼԲԱՆԻ
Ի՞նչ լուր:

ՍՈՒՐՀԱՆԴԱԿ
Տէ՛ր իմ, Կորնվալի դուքսը մահացաւ.
Սպանուեց նա մի ծառայի ձեռքով,
Երբ պատրաստւում էր հանել Գլոստէրի
Մի աչքը եւս:

ԱԼԲԱՆԻ
Գլոստէրի ա՞չքը:

ՍՈՒՐՀԱՆԴԱԿ
Մի ծառայ, որին մեծացրել էր նա,
Խղճահարուելով՝ իր սուրը քաշեց
Հզօր տիրոջ դէմ, որ կատաղելով
Յարձակուեց խեղճ ծառայի վրայ,
Միւսների հետ նրան սպանեց,
Բայց ինքն էլ առաւ մահացու մի վէրք
Եւ նոյն այդ վէրքից, ահա, մահացաւ:

ԱԼԲԱՆԻ
Սա ցոյց է տալիս, որ կաք վերեւում
Դո՛ւք, արդարադատ աստուածնե՛ր եւ դուք

Գիտեք շուտափույթ հատուցում յղել
Մեր ոճիրների համար աշխարհում:
Բայց, օ՛հ, խե՛ղճ Գլոստեր, մի աչքն է՞լ կորցրեց:

СՈՒՐՀԱՆԴԱԿ

Այո, երկուսն էլ: Այս գրությունը
Ձեր քրոջից է, տիկի՛ն, եւ արագ
Նա պատասխան է ձեզանից ուզում:

ԳՈՆԵՐԻԼ

*(Առանձին).*

Լաւ է մի կողմից, որ այս պատահեց.
Այրի է սակայն իմ քույրը հիմա
Եւ Էդմոնդիս հետ միասին... Եւ այս
Կարող է յանկարծ կործանել մտքիս
Նպատակը ողջ եւ իր տակ թաղել
Ատելի կեանքս: Մի ուրիշ կողմից՝
Լուրն այնքան վատ չէ:
*(Բարձր).*
Կկարդամ ես այն
Եւ ապա իսկոյն կպատասխանեմ:

**Դուրս է գնում:**

ԱԼԲԱՆԻ

Ո՞ւր էր իր որդին, Էդմոնդը, սակայն,
Երբ հանում էին աչքերը նրա:

ՍՈՒՐՀԱՆԴԱԿ

Նա այստեղ եկաւ միլեդիի հետ:

ԱԼԲԱՆԻ

Նա այստեղ չկայ:

ՍՈՒՐՀԱՆԴԱԿ

Ո՛չ, տէ՛ր իմ, նրան
Ես տեսայ, երբ նա վերադառնում էր:

ԱԼԲԱՆԻ
Նա գիտէ՞ արդեօք այդ անարգ գործը:

ՍՈՒՐՀԱՆԴԱԿ
Այո՛, ազնիւ տէ՛ր: Նա ինքն էր իր հօր
Ամբաստանիչը եւ ինքը դիտմամբ
Մահից հեռացաւ, որ զարհուրելի
Այդ պատիժն ազատ ընթացք ստանայ:

ԱԼԲԱՆԻ
Գլոստէ՛ր, ես դեռ կամ, որ քեզ հաստուցեմ
Այն սիրոյ համար, որ ցոյց ես տուել
Դէպի ծեր արքան եւ վրէժ լուծեմ
Աչքերիդ համար: Դէ, ե՛կ, բարեկա՛մ,
Պատմի՛ր ինձ ողջը, ինչ որ դու գիտես:

**Դուրս են գնում:**

**ՏԵՍԱՐԱՆ Գ.**

**Ֆրանսիական բանակը Դուվրի մօտ**
**Մտնում են Քէնտը եւ մի ասպետ:**

ՔԷՆՏ
Ինչո՞ւ Ֆրանսիայի արքան այսպէս անակնկալ ետ վերադարձաւ, դու չգիտե՞ս պատճառը:

ԱՍՊԵՏ
Կիսատ էր թողել պետական մի գործ,
Որ մտաբերեց իր գալուց յետոյ.
Դա այնքան ծանր էր պետութեան համար
Ու վտանգաւոր, որ պէտք զգացուեց
Նրա անձնական ներկայութիւնը:

ՔԷՆՏ
Ո՞ւմ թողեց իր տեղ իբրեւ զօրավար:

ԱՍՊԵՏ
Ֆրանսիոյ մարաջախտ պարոն Լը Ֆէոին:

ՔԷՆՏ
Երբ նամակը դուք տուիք թագուհուն,
Նա չվշտացա՞ւ արդեօք լուրերից:

ԱՍՊԵՏ
Իհարկէ, տէ՛ր իմ:
Նա նամակն առաւ, կարդաց իմ առջեւ,
Եւ մէկ-մէկ խոշոր արցունքներ էին
Գլորւում նրա քնքուշ այտերից.
Թագուհին էր նա իր վշտի հանդէպ,
Բայց վիշտը նրա, իբրեւ ապստամբ,
Ճգնում էր իշխել թագուհու վրայ:

ՔԷՆՏ
Ուրեմն յուզուե՞ց:

ԱՍՊԵՏ
Ոչ մինչեւ զայրոյթ. համբերութիւնը
Եւ տրտմութիւնը պայքարում էին,
Որ կարողանան տալ նրա դէմքին
Աւելի չքնաղ արտայայտութիւն:
Տեսե՞լ էք մէկտեղ արեւ ու անձրեւ.
Իր ժպիտները եւ արցունքները
Մայիսեան չքնաղ օրուայ պէս էին.
Եւ գեղածիծաղ իր ժպիտները,
Որ խաղում էին շրթերի վրայ,
Անտեղեակ էին աչքերից հոսող
Արտասուքներին, որ կաթում էին
Ինչպէս շողշողուն ադամանդներից
Թափուող մարգարիտ: Մի խօսքով՝ վիշտը
Անչափ թանկագին մի բան կլինէր,
Եթէ ամէնքին վայելէր այդպէս:

ՔԷՆՏ

Նա բերանացի քեզ հարց չտուե՞ց:

ԱՍՊԵՏ

Մի երկու անգամ կրծքից արձակեց
«Հայրիկ» անունը այնքան սրտառուչ,
Կարծես այդ բառը սիրտը գալարեց.
Յետոյ նա գոչեց. «քոյրե՛ր, ա՜խ քոյրե՛ր,
Կանանց նախատինք, քոյրե՛ր, Քէ՛նտ, հայրի՛կ.
Ի՛նչ, փոթորկի մէ՞ջ, գիշեր ժամանակ,
Էլ մի՛ք հաւատա, որ գութ կայ կեանքում»:
Ապա երկնային աչքերից թափուող
Սրբազան ցօղով ողողեց նա իր
Հեծեծանքը եւ շտապ հեռացաւ,
Որ մենակ մնայ իր տրտմութեան հետ:

ՔԷՆՏ

Աստղերն են երկնի, աստղերն են միայն,
Որ իշխում են մեր վիճակի վրայ.
Եթէ ոչ՝ հայրը, մայրը միեւնոյն
Անկարող էին ծնունդ տալ այսքան
Տարբեր զաւակների: Բայց դուք նրա հետ
Էլ չխօսեցի՞ք:

ԱՍՊԵՏ

Ո՛չ:

ՔԷՆՏ

Թագաւորը
Դեռ չէ՞ր գնացել:

ԱՍՊԵՏ

Ո՛չ, չէր գնացել,
Նա յետոյ մեկնեց:

ՔԷՆՏ

Լաւ, պարո՛ն: Լիրը,

Այն խեղճ թշուառը, այս քաղաքում է:
Նա մերթ, երբ ուշքը վերադառնում է,
Յիշում է, թէ մենք ինչու ենք եկել,
Եւ նա ոչ մի կերպ չի համաձայնում
Տեսնել աղջկան:

ԱՍՊԵՏ

Ինչո՞ւ, ազնի՛ւ տէր:

ՔԷՆՏ

Մի անհուն ամօթ տանջում է նրան.
Այն խստութիւնը, որով նա զրկեց
Իր հեզ աղջկան իր օրհնութիւնից
Եւ յանձնեց նրան դժնի աստղերին,
Նրա սրբազան իրաւունքները
Տալով շնասիրտ իր աղջիկներին:
Այնպիսի ժահրոտ խոցեր են սրանք
Իր հոգու համար, որ բուռն ամօթից
Չի համարձակւում նա տեսնել նրան:

ԱՍՊԵՏ

Աւա՛ղ, խե՛ղճ արքայ:

ՔԷՆՏ

Ոչինչ չէ՞ք լսել
Դուք Ալբանիի եւ Կորնվալի
Զօրքերի մասին:

ԱՍՊԵՏ

Մօտենում են մեզ:

ՔԷՆՏ

Ես ձեզ կտանեմ մեր տէր Լիրի մօտ՝
Թողնելով, որ դուք հոգ տանէք նրան,
Մի զօրեղ պատճառ ստիպում է ինձ
Դեռ քիչ էլ մնալ այսպէս ծպտուած:

Երբ ես ճանաչում՝ դուք չէք ափսոսալ,
Որ ինձ հետ այսպէս ծանօթ էք եղել:
Դէ, եկէ՛ք ինձ հետ:

**Դուրս են գնում:**

## ՏԵՍԱՐԱՆ Դ.

**Վրան Դուվրի բանակում**

**Մտնում են Կորդելիան, բժիշկը եւ զինուորներ:**

ԿՈՐԴԵԼԻԱ

Այա՛ղ, նա ինքն է. մի փոքր առաջ
Տեսել են նրան այնպէս մոլեգին,
Ինչպէս կատաղի, բազմայոյզ մի ծով:
Տեսել են նրան բարձր երգելիս,
Ճակատին պսակ վայրի խոտերից,
Գիժ վարսակներից, կռատուկներից,
Մոլախինդներից, որոմից, կկուի
Ծաղկից, եղինջից եւ ամէն տեսակ
Անպէտք խոտերից, որ պարարտ հողում
Բուսնում են, աճում:
*(Մի սպայի).*

Ուղարկի՛ր մի վաշտ,
Թող լաւ խուզարկեն բարձր խոտերի
Ամէն անդաշափ եւ բերեն նրան
Մեր աչքի առջեւ:
*(Բժշկին).*
Ի՞նչ հնար արդեօք կարող է գտնել
Մարդկային միտքը՝ ետ տալու համար
Նրանից խլուած դատողութիւնը:
Ով բուժէ նրան՝ ինձանից նա թող
Ստանայ իմ ողջ հարստութիւնը:

**Մի սպա դուրս է գնում:**

ԲԺԻՇԿ

Ճար կայ, տիրուհի՛, բնութեան բուժիչ
Քունն է, եւ դրան նա կարօտ է խիստ:
Եւ դրա համար այնպիսի ազդու
Խոտեր կան բուրեան, որ ընդունակ են
Անգամ տրտմութեան աչքը փակելու:

ԿՈՐԴԵԼԻԱ

Ո՛վ սուրբ գաղտնիքներ, ո՛վ երկրի բոլոր
Թաքնուած ուժեր եւ զօրութիւններ,
Դո՛ւրս արձակուեցէք արցունքներիս հետ,
Օգնութի՛ւն տուէք եւ ապաքինում
Բարի ծերունու դժբախտութեանը:
Գնացէ՛ք խնդրեմ, փնտրեցէ՛ք նրան,
Կարող է յանկարծ զայրոյթը անզուսպ
Կործանել նրա կեանքը, որ չունի
Ոչ մի առաջնորդ:

**Մտնում է մի սուրհանդակ:**

ՍՈՒՐՀԱՆԴԱԿ

Նոր լուր, տիրուհի՛.
Բրիտանեան զօրքը առաջանում է:

ԿՈՐԴԵԼԻԱ

Այդ վաղուց գիտենք եւ պատրաստ ենք մենք
Նրանց ընդունել: Օ՛հ, սիրելի հայր,
Քեզ համար եմ լոկ ես եկել այստեղ.
Մեծն Ֆրանսիան գթաց իմ սուգին
Եւ արցունքներին իմ թախանձական:
Մեզ ոչ թէ փառքի սին տենչն է զինել,
Այլ սէրը միայն, սէրը կաթոգին
Եւ ծերուկ մեր հօր իրաւունքները:
Ա՜խ, գէթ նրանից մի լուր առնէի,
Տեսնէի նրան:

**Դուրս են գնում:**

## ՏԵՍԱՐԱՆ Ե.

**Ռեգանի պալատը**

**Մտնում են Ռեգանը եւ Օսվալդը:**

ՌԵԳԱՆ

Եղբօրս զօրքը ճանապարհ ընկա՞ւ:

ՕՍՎԱԼԴ

Այո, տիրուհի՛:

ՌԵԳԱՆ

Եւ ի՞նքն էլ անձամբ:

ՕՍՎԱԼԴ

Այո, տիրուհի՛, մեծ դժուարութեամբ:
Ձեր քոյրն աւելի արի զինուոր է:

ՌԵԳԱՆ

Իսկ լորդ Էդմոնդը չխօսե՞ց արդեօք
Ձեր տիրուհու հետ:

ՕՍՎԱԼԴ

Օ՛, ո՛չ, տիրուհի:

ՌԵԳԱՆ

Քրոջս գրած նամակում նրան
Ի՞նչ պէտք է լինի:

ՕՍՎԱԼԴ

Չգիտեմ, տիկի՛ն:

ՌԵԳԱՆ

Անշուշտ կարեւոր մի պատճառ ունէր,
Որ այնքան արագ մեկնեց այստեղից:

Գլոստէրի աչքերն հանելուց յետոյ
Անխոհեմ բան էր ողջ թողնել նրան.
Ուր հասնում է նա՝ բոլոր սրտերը
Յուզում է մեր դէմ: Էդմոնդը կարծեմ
Գթալով նրա դժբախտութեանը՝
Գնաց, որ վերջ տայ նրա մութ կեանքին
Եւ տեղեկանայ դրա հետ մէկտեղ
Թշնամու ուժին:

ՕՍՎԱԼԴ

Ես էլ եմ գնում
Նրա ետեւից, որ նամակը տամ:

ՌԵԳԱՆ

Վաղը մեր զօրքը ճանապարհ կընկնի,
Սպասի՛ր այստեղ, ճանապարհները
Վտանգաւոր են:

ՕՍՎԱԼԴ

Չեմ կարող, տիկի՛ն:

ՌԵԳԱՆ

Նա ի՞նչ է արդեօք գրում Էդմոնդին.
Դու չէ՞իր կարող նրա պատգամը
Լեզուով հաղորդել: Թերեւս մի բան...
Չգիտեմ թէ ինչ... քեզ շատ կսիրեմ,
Եթէ նամակը թոյլ տաս բանալու...

ՕՍՎԱԼԴ

Տիկի՛ն, աւելի կյօժարէի...

ՌԵԳԱՆ

Գիտեմ, տիրուհիդ չի սիրում մարդուն,
Այդ լաւ գիտեմ ես, եւ վերջին անգամ
Երբ այստեղ էր նա՝ սիրոյ ակնարկներ,
Խօսուն հայեացքներ արձակում էր միշտ

Ազնիւ Էդմոնդին, գիտեմ, նրա հետ
Դու մտերիմ ես:

ՕՍՎԱԼԴ

Ե՞ս... Ո՛չ, տիրուհի՛:

ՌԵԳԱՆ

Ինքս լաւ գիտեմ, թէ ինչ եմ ասում:
Դու մտերիմն ես նրա, լաւ գիտեմ.
Ուրեմն լսի՛ր այս խորհուրդս դու.
Ես այրի եմ արդ. Էդմոնդը եւ ես
Խոստում ենք տուել արդէն իրարու.
Նա աւելի շուտ ինձ կյարմարի,
Քան քո տիրուհուն: Մնացածը դու
Ի՛նքդ հասկացիր: Երբ նրան գտնես՝
Խնդրում եմ յանձնես նրան սա այս:
*(Տալիս է մի մատանի)*.
Իսկ երբ տիրուհուդ պատմելու լինես՝
Այս ամէնն ասա՛ խնդրում եմ նրան,
Որ խելքն հաւաքի: Դէ, գնա՛ս բարով:
Եթէ պատահմամբ բան լսես այն կոյր
Մատնիչի մասին՝ իմացա՛ծ եղիր,
Որ նրա կեանքին վերջ դնողը մեծ
Շնորհ կստանայ:

ՕՍՎԱԼԴ

Ես շատ կուզէի
Հանդիպել նրան եւ ցոյց տալ, թէ ո՞ւմ
Կուսակիցն եմ ես:

ՌԵԳԱՆ

Դէ, գնաս բարով:

**Դուրս են գնում:**

## ՏԵՍԱՐԱՆ Զ.

**Դաշտ Դուվրի շրջակայքում**
**Մտնում են Գլոստերը եւ Էդգարը՝ իբրեւ շինականներ:**

ԳԼՈՍՏԵՐ
Ե՞րբ պիտի հասնենք ծայրը բլուրի:

ԷԴԳԱՐ
Դուք այս րոպէիս վ եր էք բարձրանում,
Մի՞թէ չէք տեսնում՝ ինչպէս ենք յոգնում:

ԳԼՈՍՏԵՐ
Բայց գետինն այստեղ ինձ հարթ է թւում:

ԷԴԳԱՐ
Ժայռ է սոսկալի, ա՛հ, ծովի ձայնը
Մի՞թէ չէք լսում:

ԳԼՈՍՏԵՐ
Ո՛չ, ուղիղն ասած:

ԷԴԳԱՐ
Ուրեմն ձեր այդ զգայարանն էլ
Տկարացել է աչքերի ցաւից:

ԳԼՈՍՏԵՐ
Գուցէ, բայց կարծես ձայնդ փոխուել է,
Եւ դու խօսում ես աւելի խելօք
Եւ առաջուանից սահուն մի ոճով:

ԷԴԳԱՐ
Դուք սխալւում էք. ես ոչ մի բանով
Չեմ փոխուել, միայն հագուստս եմ փոխել:

ԳԼՈՍՏԷՐ

Ո՛չ, ինձ թւում է, որ առաջուանից
Դու լաւ ես խօսում:

ԷԴԳԱՐ

Նստեցէ՛ք, պարո՛ն:
Ահա գագաթը: Կանգնեցէ՛ք հանդարտ:
Ի՜նչ ահռելի է, մարդու գլուխը
Ինչպէ՜ս է դառնում, երբ նայում է ցած,
Այսպիսի մի խոր անդունդի վրայ:
Սեւ ագռաւները եւ որիները,
Որոնք ճախրում են խորութեան կէսին՝
Թւում են հազիւ բզէզների չափ:
Նոյն տեղում ահա, ժայռերից կախուած,
Մի մարդ ծովային սամիթ է քաղում.
Սոսկալի արհեստ: Նա ինքն իր գլխից
Մեծ չի երեւում: Իսկ ձկնորսները,
Որոնք քայլում են ծովի եզերքին՝
Հազիւ մկների մեծութիւն ունեն:
Եւ խարիսխ գցած այն հսկայ նաւը
Հազիւ թւում է իր մակոյկի չափ,
Իսկ իր մակոյկը՝ խարսխափայտի,
Որ շատ է փոքրիկ տեսութեան համար:
Ծովափնեայ չնչին խիճերի վրայ
Ծաչող կոհակի ձայնը չի հասնում
Այս խօլ բարձունքին: Էլ ես չեմ նայի,
Գուցէ գլուխս սկսի դառնալ,
Եւ ես նուաղած ներքեւ գլորուեմ
Դէպի անդունդը:

ԳԼՈՍՏԷՐ

Կանգնեցրո՛ւ դու ինձ, ուր կանգնած ես արդ:

ԷԴԳԱՐ

Լաւ, առա՛ջ եկէք, տուէ՛ք ձեր ձեռքը:
Այժմ դուք միայն մի քայլ էք հեռու

Անդունդի ափից: Եթէ ինձ տային
Ամէն ինչ, որ կայ լուսնեակի ներքոյ՝
Չէի կամենայ ես ցատկել անգամ
Իմ կանգնած տեղում:

ԳԼՈՍՏԷՐ
Բա՛ց թող իմ ձեռքը: Ահա, բարեկա՛մ,
Քեզ այլ մի քսակ, միջին մի գոհար,
Որ արժէք ունի խեղճ մարդու համար.
Թող փերիները եւ աստուածները
Քեզ ընծայով այդ բախտաւոր անեն:
Գնա՛, հեռացի՛ր, հրաժե՛շտ ասա,
Մեկնի՛ր դու այնպէս, որ այդ ես լսեմ:

ԷԴԳԱՐ
Մնացէք բարո՛վ, յարգելի պարո՛ն:

**Գնալ է ձեւացնում:**

ԳԼՈՍՏԷՐ
Ձեզանից անչափ շնորհակալ եմ:

ԷԴԳԱՐ
*(Առանձին).*
Եթէ ես նրա անյուսութեան հետ
Խաղում եմ այսպէս լոկ այն պատճառով,
Որ նրան բուժեմ:

ԳԼՈՍՏԷՐ
*(Ծունկի գալով).*
Ահե՛ղ աստուածներ,
Ես հրաժեշտ եմ տալիս աշխարհին,
Եւ արդ, ձեր առաջ, անվրդով հոգով,
Թօթափում եմ իմ սրտի վրայից
Իմ կսկիծը մեծ: Եթէ ինձ համար
Մի հնար լինէր կրել տակաւին

Եւ չմաքառել, պայքար չմղել
Ձեր մեծ կամքի դէմ, ես թոյլ կտայի՝
Կեանքիս պատրոյգի զազրելի մասը
Ինքնիրեն մարէր: Եթէ Էդգարը
Դեռ կենդանի է՝ օգնեցէ՛ք նրան:
Այժմ, ո՛վ ընկեր, դէ մնաս բարո՛վ:

ԷԴԳԱՐ

Գնացի, տէ՛ր իմ: Մնացէք բարո՛վ:

**Գլոստէրը ցատկում է եւ ընկնում հարթ գետնի վրայ:**

ԷԴԳԱՐ

*(Առանձին).*

Սակայն չգիտեմ՝
Երեւակայութիւնն արդեօք չի՞ կարող
Հէնց ինքը կեանքի գանձը գողանալ,
Երբ կեանքը ինքը օժանդակում է
Գողութեանը այդ: Եթէ նա լինէր
Այնտեղ, ուր ինքը կարծում էր՝ արդէն
Վաղուց կլինէր միտքը դադարած:
Ո՞ղջ էք, թէ՞ մեռած, լսո՞ւմ էք, պարո՛ն,
Խօսեցէ՛ք, պարոն:
*(Առանձին).*

Կարող է լինել,
Որ մեռել է նա արդէն իսկապէս:
Բայց ոչ. նա ահա ուշքի է գալիս:
Ո՞վ էք դուք, պարո՛ն:

ԳԼՈՍՏԷՐ

Գնա՛, թող մեռնեմ:

ԷԴԳԱՐ

Թէ չլինէիր
Մի սարդի ոստայն, մի փետուր կամ օդ՝
Այս բարձրութիւնից գահավիժելով՝

Մի ձուի նման ջախջախուել էիր:
Բայց դու շնչում ես. կարծր է քո նիւթը.
Արիւն չի գալիս, խօսում ես, ողջ ես:
Եթէ տասն կայմ ծայր-ծայրի շարեն՝
Չեն կարող հասնել այն բարձրութեան,
Որից ընկել ես դու ուղիղ գծով:
Հրաշք է, որ դու ապրում ես: Խօսի՛ր:

ԳԼՈՍՏԵՐ

Ընկե՞լ եմ, թէ՞ ոչ:

ԷԴԳԱՐ

Կաւճուտ խարակի
Գագաթից այն, տե՛ս, դու ընկել ես վար.
Մի վերե՛ւ նայիր՝ սրաձայն արտուտն
Այն բարձրութիւնից տեսանելի չէ,
Ոչ էլ իր ձայնը կարող է լսուել:
Մի վերե՛ւ նայիր:

ԳԼՈՍՏԵՐ

Աւա՜ղ, աչք չունեմ.
Զրկուա՞ծ է արդեօք դժբախտութիւնը
Գոնէ ինքն իրեն մահով վերջ տալու
Բարիքից անգամ: Գէթ սփոփանք է,
Որ թշուառ մարդը կարող է խաբել
Ժանտ բռնաւորի կատաղութիւնը
Եւ նրա գոռոզ կամքը խորտակել:

ԷԴԳԱՐ

Տո՛ւր ինձ քո ձեռքը, վե՛ր կաց, ա՛յ այդպէս.
Ինչպէ՞ս ես արդեօք, ոտքերդ պի՞նդ են.
Ահա կանգնեցիր:

ԳԼՈՍՏԵՐ

Ա՜խ, չափազանց լաւ:

ԷԴԳԱՐ

Հրա՛շք կատարեալ: Վերեւում քեզ հետ
Այն ի՞նչ էակ էր, որ մի կողմ գնաց:

ԳԼՈՍՏԵՐ

Մի խեղճ մուրացկան:

ԷԴԳԱՐ

Իսկ ինձ ներքեւից

Այնպէս երեւաց, թէ իր աչքերը
Երկու լրացած լուսիններ էին,
Հազար քիթ ունէր, եւ եղջիւրները
Գալարւում էին, ինչպէս ալիքներ
Հողմի ժամանակ: Սատանան էր այն:
Հաւատա՛ ուրեմն, ո՛վ բախտաւոր հայր,
Որ հեշտութեամբ են ի կատար ածում
Հզօր աստուածներն այնպիսի գործեր,
Որ մարդկանց համար անհնարին են:
Նրանք են, ահա, քեզ մահից փրկել:

ԳԼՈՍՏԵՐ

Յիշում եմ որջը, եւ այսուհետեւ
Ես լուռ կկրեմ ամէն վիշտ ու ցաւ,
Մինչեւ որ նրանք ինձ աղաղակեն՝
«Էլ բաւ է, մեռի՛ր»: Իսկ այն էակին,
Որ պատմում ես դու, ես մարդ կարծեցի.
Նա միշտ կրկնում էր «Դե՛ւը, չար դե՛ւը»:
Նա ինքը այնտեղ առաջնորդեց ինձ:

ԷԴԳԱՐ

Թող հոգիդ խաղաղ, համբերող լինի:
Բայց ո՞վ է գալիս:

**Մտնում է Լիրը՝ տարօրինակ զարդարուած**
**վայրի ծաղիկներով:**

Առողջ ուղեղը
Երբէք իր տիրոջն այսպէս չի պճնի:

ԼԻՐ

Ո՛չ, ինձ չեն կարող արգելել դրամ կտրել, որովհետեւ ես արքայ եմ:

ԷԴԳԱՐ

Օ՛հ, սրտաճմլիկ տեսարան:

ԼԻՐ

Այդ գործում բնութիւնը արհեստից բարձր է: Ահա քեզ քո գլխադրամը: Այն մարդն իր ուղեղը խրտուիլակի նման է շարժում. դէ մի նե՛տ արձակիր ջուլհակի կանգունի չափ. տե՛ս, տե՛ս, ահա մի մուկ. սո՛ւս, սո՛ւս, այս մի կտոր տապակած պանիրը նրա գործը գլուխ կբերի: Ահա իմ ռազմի ձեռնոցը. ես այն կնետեմ մի հսկայի. բերէ՛ք գեղարդները: Օ՛, լաւ թռար, թռչնի՛կ, ճիշտ նշանին, ճիշտ նշանին: *(Էդգարին).* Հո՛ւու, ասա՛ նշանաբանը:

ԷԴԳԱՐ

Քաղցր մարիորամ:

ԼԻՐ

Անցի՛ր:

ԳԼՈՍՏԷՐ

Ես այդ ձայնը ճանաչում եմ:

ԼԻՐ

Հա՛, Գոներիլ. Սպիտակ մօրուքո՛վ, նրանք ինձ շոյում են, ինչպէս մի շնիկի, եւ ասում են, որ ես սպիտակ մազեր ունեմ մօրուքիս մէջ՝ նախքան այնտեղ սեւ մազեր ունենալս: Այո կամ ոչ ասե՛լ իմ ամէն ասածին: «Այոն» եւ «ոչը» լաւ աստուածաբանութիւն չէր: Հէնց որ անձրեւն ինձ թրջեց եւ հողմն ինձ դողացրեց, երբ որոտը չլռեց իմ հրամանով, նոր միայն ես

տեսայ, նոր միայն հռոռտեցի. թէ նրանք ի՛նչ էին: Գնա՛ բատ-
նիղ, նրանք իրենց խօսքը պահողը չեն. ինձ ասում էին, թէ ես
ամէն բան էի. այդ սուտ է. ես ջերմին անգամ դիմացողը չեմ:

ԳԼՈՍՏԵՐ

Ես լաւ եմ յիշում այս ձայնը... Մի՞թէ
Թագաւորը չէ:

ԼԻՐ

Այո, թագաւո՛ր.
Գլխից մինչեւ ոտք թագաւոր: Երբ ես
Հայեացք եմ նետում, տես, ո՛նց են դողում
Հպատակներս:
Ես շնորհում եմ այդ մարդու կեանքը:
Ի՞նչ մեղք է գործել. անառակութի՞ւն.
Չպէ՛տք է մեռնի.
Անառակութեան համար՝ մա՞հ, օ՛, ո՛չ.
Թէ՛ սարեակ, թէ՛ ճանճ նոյն բանն են անում
Իմ աչքի առջեւ, առանց քաշուելու.
Թող ցոփութիւնը անհի բազմանայ.
Քանզի Գլոստերի ապօրէն որդին
Աւելի սիրով վարուեց իր հօր հետ,
Քան օրինաւոր մահճի մէջ սերած
Իմ աղջիկները:
Ցնծա՛, ցոփութի՛ւն, խառնիխուռն, ազատ,
Չէ՞ որ ինձ համար զինուորներ են պէտք.
Նայեցէ՛ք, ահա, այն տիկնոջ դէմքին.
Ի՛նչ անմեղ ժպիտ. նրա երեսը
Կարծել է տալիս, թէ նա ձիւն ունի
Իր ազդրերի մէջ. որ կոտրատուելով
Սուրբ է ձեւանում, սակայն «հեշտութիւն»
Բառն իսկ լսելիս շառագունում է:
Ո՛չ ժանտաքիսը եւ ո՛չ էլ կանաչ
Խոտով գիրացած նժոյգը երբեք
Գրոհ չեն տալիս աւելի անսանձ
Մի ախորժակով:

Նրանք մէջքից վար կենտավրոսներ են
Եւ կին՝ մէջքից վեր:
Ինչ վեր է գոտուց՝ աստուածներինն է,
Իսկ գոտուց ներքեւ՝ դեւերինը չար,
Այնտեղ կայ դժոխք, այնտեղ կայ խաւար:
Այնտեղ կայ ծծմբային անդունդ, այրում, եռք, գարշահոտութիւն, սպառում: Թո՛ւ, թո՛ւ, թո՛ւ, փա՛հ, փա՛հ: Մի մսխալ մո՛ւշկ տուր, բարի՛ դեղագործ, իմ երեւակայութիւնը մաքրելու համար: Ահա ձեզ փողը:

ԳԼՈՍՏԵՐ

Օ՛հ, թող համբուրեմ այդ ձեռքը:

ԼԻՐ

Նախ թող սրբեմ. մահացութեան հոտ է գալիս նրանից:

ԳԼՈՍՏԵՐ

Ո՛վ դու կործանուած հրաշակերտ բնութիւն: Մեր ողջ աշխարհն էլ այսպէս կմաշուի, կոչնչանայ: Ճանաչո՞ւմ ես ինձ:

ԼԻՐ

Ես լաւ եմ յիշում այդ աչքերը: ինձ շե՞ղ ես նայում: Ո՛չ, արա՛ ինչ որ կարող ես, կոյր Կուպիդո՛ն, ես չեմ սիրելու այլեւս: Կարդա՛ ահա այս մենամարտի հրաւէրը, միայն լաւ ուշադրութիւն դարձրու ոճին:

ԳԼՈՍՏԵՐ

Եթէ քո տառերը մի-մի արեգակներ լինէին, դարձեալ ես ոչ մէկը չէի կարող տեսնել:

ԷԴԳԱՐ

*(Առանձին).* Եթէ ինձ այս ամէնը պատմէին, ես չէի հաւատայ, բայց ահա այսպէս է, եւ սիրտս փշրւում է:

ԼԻՐ

Կարդա՛:

ԳԼՈՍՏԵՐ

Ինչպե՞ս, աչքի խոռոչնե՞րով:

ԼԻՐ

Օհո՛, ա՞յդ ես ուզում ասել. ո՛չ աչք դէմքիդ վրայ, ո՛չ էլ դրամ՝ գրպանումդ: Քո աչքերը շատ ծանր վիճակի մէջ են, իսկ քսակդ՝ շատ թեթեւ: Բայց դարձեալ դու տեսնում ես, թէ ինչպէս են ընթանում աշխարհի գործերը:

ԳԼՈՍՏԵՐ

Ես այդ տեսնում եմ զգալով միայն:

ԼԻՐ

Ի՞նչ է, յիմարացե՞լ ես. մարդ կարող է առանց աչքերի էլ տեսնել, թէ աշխարհի գործերը ինչպէս են գնում: Ականջնե-րո՛վդ նայիր, տե՛ս, ինչպէս է այն դատաւորը բարբառում այն պարզամիտ գողի մասին: Լսի՛ր, ականջիդ ասեմ. փոխի՛ր նրանց տեղերը եւ ձեռնախփուկի նման ասա՛, թէ որն է դա-տաւորը, որն է գողը: Դու տեսե՞լ ես, ինչպէս ագարակատի-րոջ շունը հաչում է մուրացկանի վրայ:

ԳԼՈՍՏԵՐ

Այո, տէ՛ր:

ԼԻՐ

Եւ ինչպէս խեղճ մարդը փախչում է շնից, լաւ, դու դրանում տեսել ես իշխանութեան իսկական պատկերը. շունն, իբրեւ պաշտօնեայ, իշխում է ուրիշի վրայ...

Լպիրշ ոստիկա՛ն, քաշի՛ր դէպի քեզ
Արիւնոտ ձեռքդ: Ինչո՞ւ ես խփում
Կնոջն այդ պոռնիկ: Քո մէջքի՛ն խփիր:
Դու ախտաբորբոք ցանկութիւն ունես
Նոյն յանցանքը հէնց կատարել իր հետ,
Որի պատճառով ծեծում ես նրան:
Վաշխառուն գողին կախել է տալիս,
Ցնցոտու միջից փոքրիկ մեղքերը

Ծուռ են երեւում, բայց պերճ զգեստները
Ու մուշտակները ծածկում են նրանց:
Ջրահի՛ր մեղքը ոսկէ պատեանով
Եւ արդարութեան տէգը պողպատեայ
Անվնաս դարձած՝ կջարդուի խսկոյն:
Պատի՛ր այդ մեղքը ցնցոտիներով՝
Թզուկի շիւղն էլ կխոցէ նրան:
Ոչ մեղաւորներ չկան աշխարհում.
Ես ներում եմ այդ նրանց բոլորին:
Լսի՛ր, բարեկա՛մ, ունեմ ես դեռ ուժ
Փակելու անարգ զրպարտիչների
Բերանն ու լեզուն:
Գտի՛ր քեզ համար ապակեայ աչքեր,
Եւ իբրեւ խղճուկ մի քաղաքագէտ
Սովորի՛ր կեղծել, որ տեսնում ես այն,
Ինչ որ չես տեսնում: Դէ, շո՛ւտ, դէ, արա՛գ,
Քաշի՛ր կօշիկս, ուժով, հա՛, այդպէ՛ս:

ԷԴԳԱՐ
*(Առանձին).*

Օ՛հ, խառնո՛ւրդ մտքի եւ անմտութեան.
Խե՛լք խենթութեան մէջ:

ԼԻՐ

Թէ ուզում ես լալ
Վիճակիս վրայ՝ ա՛ռ իմ աչքերը.
Ես բաւական լաւ ճանաչում եմ քեզ.
Անունդ է Գլոստէր, պէտք է համբերես,
Արտասուելով ենք մենք եկել աշխարհ.
Առաջին անգամ հէնց օդ շնչելիս՝
Մենք լաց ենք լինում եւ աղաղակում:
Լսի՛ր, քեզ համար մի քարոզ ասեմ:

ԳԼՈՍՏԷՐ

Օ՛, վա՛յ ինձ, վա՛յ ինձ:

ԼԻՐ

Երբ ծնւում ենք մենք՝
Աղաղակում ենք, թէ եկել ենք այս
Խելագարային բեմում խաղալու:
Սա լաւ գլխարկ է, լաւ գիւտ կլինէր՝
Հեծելազօրքի բոլոր ձիերին
Պայտել թաղիքով. պէտք է այս փորձեմ.
Ապա կարշաւեմ փեսաներիս դէմ,
Եւ այն ժամանակ՝ ջա՛րդ, ջա՛րդ, ջա՛րդ, ջա՛րդ ջա՛րդ...

Մտնում է մի սպայ ծառաների հետ:

ՍՊԱՅ

Օ՛հ, նա այստեղ է, բռնեցէ՛ք նրան.
Ամենասիրելի ձեր դուստրը, տէ՛ր իմ...

ԼԻՐ

Ինձ օգնող չկա՞յ, ի՞նչ, գերի՞ եմ ես:
Ուրեմն բախտի խեղկատակն եմ միշտ:
Լաւ վարուիր ինձ հետ, փրկանք կստանաս.
Դէ՛, վիրաբոյժներ բերէ՛ք ինձ համար.
Վիրաւորուած եմ ուղեղիցս ես:

ՍՊԱՅ

Ամէն բան կտան:

ԼԻՐ

Ոչ ոք չի՞ օգնում.
Մեն մենակ ե՞մ ես: Օ՛հ, այս կարող է
Ստիպել մարդու, ով արցունք ունի,
Աչքերը ջրի ցնցուղ դարձնել
Եւ թրջել փոշին ճանապարհների:

ՍՊԱՅ

Ազնի՛ւ տէր:

ԼԻՐ

Պէտք է ես արի մեռնեմ,
Որպէս զարդարուած, պճնուած փեսայ.
Դէ, զուա՛րթ լինեմ: Օ՛հ, կորէ՛ք, կորէ՛ք.
Ես թագաւոր եմ, հասկանո՞ւմ էք այս:

ՍՊԱՅ

Դուք թագաւոր էք, իսկ մենք՝ ձեզ հլու:

ԼԻՐ

Դեռ կեանք կա՞յ, ուրեմն, այդ արքայի մէջ:
Իսկ եթէ դուք ինձ ուզում էք բռնել՝
Վազելով միայն կարող էք բռնել:
Սա, սա, սա, սա...

**Դուրս է գնում վազելով՝ ծառաները ետեւից:**

ՍՊԱՅ

Օ՛հ, դառն, դժնի, գթաշարժ պատկե՛ր,
Ոչ թէ արքայի, այլ անգամ անարգ
Մի թշուառ ճորտի վիճակի համար:
Բայց ունես դու դեռ մի դուստր, որ ողջ
Մարդկային ցեղը ազատում է այն
Հանուր նզովքից, որ միւս երկու
Դուստրերդ բերին մարդկութեան գլխին:

ԷԴԳԱՐ

Բարեւ, ազնիւ տէ՛ր:

ՍՊԱՅ

Տէր ընդ ձեզ, պարո՛ն.
Ի՞նչ էք կամենում:

ԷԴԳԱՐ

Լսել է՞ք, պարո՛ն,
Որ շուտով կռիւ կարող է լինել:

ԱՍՊԵՏ

Պարզ է եւ յայտնի, ով ականջ ունի՝
Լսել է արդէն այդ լուրն։

ԷԴԳԱՐ

Ասացէ՛ք,
Որքա՞ն հեռու է միւս բանակը։

ՍՊԱՅ

Մօտ է եւ արագ առաջ է գալիս.
Ժամ առ ժամ արդէն բուն զօրամասը
Այստեղ կլինի։

ԷԴԳԱՐ

—Շնորհակալ եմ,
Հէնց այսքանն էր, տէ՛ր։

ՍՊԱՅ

Թէեւ թագուհին
Յատուկ պատճառով մնում է այստեղ,
Բայց նրա զօրքը քայլել է առաջ։

ԷԴԳԱՐ

Զգացուած եմ, տէ՛ր։

**Սպան դուրս է գնում։**

ԳԼՈՍՏԷՐ

Գթած աստուածնե՛ր, մա՛հ տուէք դուք ինձ.
Թոյլ չտաք դարձեալ, որ իմ չար ոգին
Դրդէ ինձ մահուան՝ ձեր կամքից առաջ։

ԷԴԳԱՐ

Լաւ աղօթք է այդ, հայրի՛կ։

ԳԼՈՍՏԵՐ

Բարի մա՛րդ,
Ասա ինձ հիմա, ո՞վ ես արդեօք դու:

ԷԴԳԱՐ

Մի հէգ մարդ՝ բախտի հալածանքներին
Այնքան հնազանդ, որ թէ՛ իր նախկին,
Թէ՛ այժմ ունեցած վիշտ ու կսկիծով
Դարձել է այլոց վշտի կարեկից:
Տուէ՛ք ձեր ձեռքը, եւ ես կտանեմ,
Ձեզ մի օթեւան:

ԳԼՈՍՏԵՐ

Ես ձեզ ի սրտէ շնորհակալ եմ,
Երկնային շնորհն ու օրհնութիւնը
Թող վարձք լինեն ձեզ:

**Մտնում է Օսվալդը:**

ՕՍՎԱԼԴ

*(Առանձին).*

Խոստացուած ընծա՞ն:
Ի՛նչ երջանկութիւն. այդ անարգ գլուխն
Առաջին օրից ստեղծուած է հէնց
Իմ բախտի անշեղ բարձրացման համար:
*(Գլոստէրին).*
Ո՛վ դու ծերունի, դժբախտ դաւաճա՛ն,
Խորհի՛ր անյապաղ՝ ինչ խորհելու ես.
Քաշուած է սուրը՝ քեզ վախճան բերող:

ԳԼՈՍՏԵՐ

Զա՛րկ, մաղթում եմ քո բարերար ձեռքիդ
Հարկաւոր ուժը:

**Էդգարը դիմադրում է:**

ՕՍՎԱԼԴ

Յանդուգն գեղջո՛ւկ,
Համարձակւում ես դու պաշտպան կանգնել
Ցայտնի, բացարձակ մի դաւաճանի՞:
Հեռո՛ւ. կարող է քեզ էլ վարակել
Նրա ժանտախտը. թո՛ղ նրա թեւը:

ԷԴԳԱՐ

Ես բաց չեմ թողնի, մինչեւ որ մի հաւկանալի պատճառ չասես:

ՕՍՎԱԼԴ

Բա՛ց թող դրան, թշուառակա՛ն, եթէ ոչ՝ քեզ կսատկացնեմ:

ԷԴԳԱՐ

Էյ, պարո՛ն, ճամփե՛դ գնա, թո՛ղ խեղճ մարդկանց հանգիստ: Թէ էդպէս մեծ-մեծ բրդելով մարդ կարողանար ինձ սպանել՝ տասնհինգ օր առաջ ինձ սպանած կլինէին: Տե՛ս, հա՛. էս խեղճ հալեւորի մազին չդիպչես. հեռո՛ւ կաց. արեւս գիտենայ, թէ մօտեցել ես՝ ես քեզ ցոյց կտամ, թէ որն է պինդ՝ քո գագա՞թը, թէ՞ իմ մահակը: Քեզ պարզն եմ ասում:

ՕՍՎԱԼԴ

Կորի՛ր, կովի թրի՛ք:

ԷԴԳԱՐ

Հիմա ես քո ատամներդ կջարդեմ, մինչեւ որ իմանաս. դէ ե՛կ մէյդան, ես քո թրից վախեցողը չեմ:

**Էդգարը փայտի մի հարուածով գլորում է նրան գետին:**

ՕՍՎԱԼԴ

Ա՛հ, թշուառակա՛ն, ինձ սպանեցիր.
Բայց ա՛ռ քսակս, եթէ ուզում ես
Քո բախտը շինել՝ թաղի՛ր մարմինս
Եւ նամակը, որ կգտնես ինձ մօտ՝

Յանձնի՛ր Էդմոնդին, Գլոստէրի կոմսին.
Այժմ Անգլիոյ բանակում է նա:
Օ՜, տարաժամ մահ:

Մեռնում է:

ԷԴԳԱՐ
Ես քեզ լաւ գիտեմ.
Դու սրիկայ ես հանոյակատար.
Տիկնոջդ ախտերին այնքան անձնուէր,
Որքան չարութիւնն ինքը կցանկար:

ԳԼՈՍՏԷՐ
Ի՞նչ, մի՞թէ մեռաւ:

ԷԴԳԱՐ
Դու նստի՛ր, հա՛յր իմ
Եւ հանգստացի՛ր: Գրպաններն հիմա
Քննենք. իր ասած նամակները ինձ
Կարող են գուցէ օգտակար լինել:
Այո մեռել է, բայց տխրում եմ ես,
Որ նա չունեցաւ մի ուրիշ դահիճ:
Դէ, տեսնենք: Թո՛յլ տուր, բարի կնքամո՛մ,
Եւ դու, խղճմտա՛նք, մի՛ կշտամբիր ինձ.
Թշնամիների թաքուն մտքերը
Տեսնելու համար մենք սիրտը նրանց
Կճեղքենք սիրով: Նամակ բանալը
Օրինաւոր է:

Կարդում է նամակը.

«Յիշի՛ր մեր փոխադարձ ուխտը: Դու շատ առիթներ ունես նրա կեանքին վերջ տալու համար: Եթէ կամքդ չթերանայ՝ առիթը եւ տեղը հեշտութեամբ կներկայանան: Մենք ոչինչ արած չենք լինի, եթէ նա յաջողութեամբ վերադառնայ. այն ժամանակ ես նրա գերին կմնամ, իսկ նրա անկողինը՝ իմ բան-

տը: Ազատի՛ր ինձ այդ մահճի զզուելի ջերմութիւնից եւ բոնի՛ր
նրա տեղը իբրեւ վարձ քո ծառայութեան:
Քո անձնուէր աղախինը, որի բաղձանքն է լինել քո կինը»:

Ո՛վ անհուն անդունդ կանացի կամքի.
Ազնիւ ամուսնի կեանքի դէմ դաւե՞լ
Եւ փոխարէնը եղբօ՞րս դնել:
Այստեղ թաղեմ քեզ, այս աւազի մէջ,
Ո՛վ դու մարդասպան, շնութեան միջնո՛րդ.
Եւ մի յարմար օր այս անարգ թուղթը
Պէտք է երեւայ այն դուքսի աոջեւ,
Որի կեանքի դէմ թակարդ ես լարել:
Բախտաւոր է նա, որ կարող եմ ես
Հաղորդել նրան թէ՛ պաշտօնը քո
Եւ թէ՛ քո մահը:

**Էդգարը դուրս է տանում դիակը:**

ԳԼՈՍՏԵՐ

Մեր թագաւորը խելագարուել է.
Որքա՛ն յամառ է իմ անարգ խելքը,
Որ կանգուն եմ դեռ եւ գիտակցօրէն
Զգում եմ դեռ ես անհուն վշտերս:
Երանի՛ ես էլ խելագարուէի.
Մտածմունքներս զէթ կանջատուէին
Իմ կսկիծներից: Մարդուս ցաւերը
Երեւակայութեան մոլորութեան մէջ
Էլ չեն գիտակցւում:

**Կրկին մտնում է Էդգարը:**

ԷԴԳԱՐ

Տուէ՛ք ձեր ձեռքը. ինձ թւում է. թէ
Մի թմբկի ձայն է մօտենում հեռուից:
Եկէ՛ք ձեզ յանձնեմ մի բարեկամի:

**Դուրս են գնում:**

## ՏԵՍԱՐԱՆ Է.

**Վրան ֆրանսիական բանակում**
**Մտնում են Կորդելիան, Քենտը եւ մի բժիշկ:**

ԿՈՐԴԵԼԻԱ
Ո՛վ ազնիւ իմ Քենտ, ես որքա՞ն ապրեմ
Եւ ի՞նչ կատարեմ, որ բարութեանդ
Լինեմ հատուցած: Կեանքս կարճ է շատ,
Եւ ամէն միջոց՝ ինձ անբաւարար:

ՔԵՆՏ
Մարդուս արածը երբ հասկացուած է,
Վարձատրւում է նա արդէն լրիւ:
Տիկի՛ն, իմ կողմից հաղորդած բոլոր
Լուրերը մաքուր ճշմարտութիւն են:
Ո՛չ յաւելում կայ, ո՛չ պակաս մի բան.
Միշտ այդպէս է հէնց:

ԿՈՐԴԵԼԻԱ
Աւելի պատշաճ մի զգե՛ստ հագիր.
Այդ հագուստները դժնի օրերի
Յիշատակներ են, դէ՛ն նետիր, խնդրեմ:

ՔԵՆՏ
Ներեցէ՛ք, խնդրեմ, բարի՛ տիրուհի,
Այսպէս վաղ յայտնել իմ ով լինելը
Վնասակար է ծրագիրներիս:
Ես կհամարեմ շնորհ դէպի ինձ,
Եթէ տակաւին ինձ չճանաչէք,
Մինչեւ որ թէ՛ ես, թէ՛ ժամանակը
Յարմար գտնենք այդ:

ԿՈՐԴԵԼԻԱ
Թող այդպէս լինի,

Սիրելի իմ լո՛րդ:
*(Բժշկին).*
Ինչպէ՞ս է արքան:

ԲԺԻՇԿ
Քնած է, տիկի՛ն:

ԿՈՐԴԵԼԻԱ
Բարի աստուածնե՛ր,
Դուք ապաքինէ՛ք նրա խոշտանգուած,
Եղծուած բնութեան աւերումը մեծ:
Օ՛հ, կա՛րգի դրէք այն սխալաձայն
Եւ աններդաշնակ գաղափարները
Իմ մանկացած հօր:

ԲԺԻՇԿ
Հաճո՞յ է արդեօք
Ձերդ մեծութեան, որ թագաւորին
Արթնացնենք քնից. նա երկար քնեց:

ԿՈՐԴԵԼԻԱ
Ձեր գիտութիւնը թող այդ որոշի,
Վարուեցէք այնպէ՛ս, ինչպէս ձեր կամքն է:
Նա հագնուա՞ծ է:

**Լիրին ներս են բերում՝ աթոռի մէջ նստած:**

ՄԻ ԱՍՊԵՏ
Այո, տիրուհի՛:
Երբ խոր քնած էր, մենք նոր զգեստներ
Հագցրինք նրան:

ԲԺԻՇԿ
Ազնի՛ւ տիրուհի,
Նրա մօտ եղէք, երբ կարթնացնենք.
Վստահ եմ, որ նա հանդարտ կլինի:

КОРДЕЛИА

Շատ լաւ:

ԲԺԻՇԿ

Տիրուհի՛, մօ՛տ եկէք, խնդրեմ:
Երաժշտութիւնն աւելի բարձր:

ԿՈՐԴԵԼԻԱ

Հա՛յր իմ սիրելի: Ո՛վ բժշկութիւն,
Կաթի՛ր քո դեղը իմ շրթունքներին,
Թող այս համբոյրս բալասան դառնայ
Այն խոր խոցերին, որ իմ քոյրերը
Քեզ պատճառեցին օրերում քո վեհ:

ՔԷՆՏ

Ո՛վ դու բարեսիրտ, անգի՛ն թագուհի:

ԿՈՐԴԵԼԻԱ

Եթէ հայր անգամ դու չլինէիր՝
Գլխիդ սպիտակ մազերը պիտի
Շարժէին նրանց կարեկցութիւնը:
Մի՞թէ այնպիսի դէմք է սա, որ մարդ
Ենթարկի նրան անզուսպ հողմերին,
Սոսկալի շանթով զինուած որոտին,
Որ պահակ կանգնի նա զարհուրելի
Կրակի ներքոյ, իբր խեղճ զինուոր՝
Այսպիսի բարակ մի սաղաւարտով:

Ցոյց է տալիս նրա մազերը:

Եթէ թշնամուս շունն իսկ ինձ կծէր,
Նման գիշերով նա տեղ կգտնէր
Կրակիս առջեւ, իսկ դու, խե՛ղճ հայրիկ,
Ստիպուած էիր օթեւան գտնել
Խոզերի, անտուն աղքատների հետ՝
Չոր հարդի վրայ: Աւա՛ղ, հրաշք է,

Որ միանգամից կեանքդ եւ խելքդ
Վախճան չգտան: Զարթնում է ահա.
Խօսեցէ՛ք իր հետ:

ԲԺԻՇԿ

Աւելի լաւ է՝
Դո՛ւք խօսէք, տիկի՛ն:

ԿՈՐԴԵԼԻԱ

Արդեօք ինչպէ՞ս է
Վեհափառ տէրս. ինչպէ՞ս է զգում
Ձերդ մեծութիւնը:

ԼԻՐ

Դուք վատ էք անում,
Որ դուրս էք քաշում ինձ գերեզմանից:
*(Կորդելիային).*
Դու մի հոգի ես երանութեան մէջ,
Իսկ ես կապուած եմ հրէ անիւին,
Եւ իմ սեփական արցունքները ինձ
Այրում են հալած կապարի նման:

ԿՈՐԴԵԼԻԱ

Ճանաչո՞ւմ էք ինձ, տէ՛ր իմ:

ԼԻՐ

Ես գիտեմ՝
Դու մի ոգի ես: Ե՞րբ վախճանուեցիր:

ԿՈՐԴԵԼԻԱ

Դեռ շատ հեռու է:

ԲԺԻՇԿ

Դեռ նոր է զարթնել.
Թողենք մի վայրկեան առանձին մնայ:

**Հեռանում են անկողնուց:**

ԼԻՐ

Որտե՞ղ էի ես եւ ո՞ւր եմ հիմա:
Օ՛հ, գեղեցիկ լո՛յս: Խաբուած եմ սաստիկ.
Ես կմեռնէի կարեկցութիւնից,
Թէ մի ուրիշին այսպէս տեսնէի,
Ի՞նչ անեմ հիմա: Չեմ կարող երդուել,
Թէ այս ձեռքերը իմն են: Բայց տեսնենք.
Այս գնդասեղի ծակոցն զգում եմ:
Երնե՜կ վիճակիս վստահ լինէի:

ԿՈՐԴԵԼԻԱ

Օ՛հ, նայի՛ր ինձ, տէ՛ր, եւ դի՛ր իմ գլխին
Օրհնութեան ձեռքդ:

**Լիրը ծունկ է չոքում Կորդելիայի առաջ.**
**Կորդելիան արգելում է:**

Ո՛չ, տէ՛ր, մի՛ չոքիր:

ԼԻՐ

Ա՜խ, մի՛ ծաղրիր ինձ.
Ես մի շատ յիմար ու խեղճ ծերուկ եմ:
Ութսուն տարեկան, գուցէ աւելի.
Ոչ մի ժամ աւել եւ ոչ էլ պակաս.
Սակայն, ճի՛շտն ասա, ես վախենում եմ,
Որ իմ ուղեղը խանգարուած լինի.
Ինձ թւում է, թէ դուք ինձ ծանօթ էք,
Այս մարդը եւս, բայց կասկածում եմ,
Քանզի չգիտեմ, թէ որտե՛ղ է այս,
Յիշողութիւնս չի կարող յիշել
Այս զգեստները, ոչ էլ ես գիտեմ,
Թէ երէկ գիշեր որտեղ քնեցի:
Մի՛ ծաղրիր դու ինձ, որքան որ ճիշտ է,
Որ մի մարդ եմ ես, այնքան վստահ եմ,
Որ այս տիկինը իմ Կորդելիան է:

ԿՈՐԴԵԼԻԱ

Այո՛, ես եմ, հա՛յր:

ԼԻՐ

Արտասուքներդ թրջո՞ւմ են արդեօք.
Այո, ճշմարի՛տ, խնդրում եմ, մի՛ լար:
Եթէ ինձ համար թոյն ունես պատրաստ՝
Տո՛ւր ինձ, որ խմեմ: Ես իմանում եմ՝
Դու ինձ չես սիրում, քանզի քոյրերդ,
Որքան յիշում եմ, ինձ շատ տանջեցին.
Դու պատճառ ունես, նրանք չունէին:

ԿՈՐԴԵԼԻԱ

Ես պատճառ չունեմ, ո՛չ, ամենեւի՛ն:

ԼԻՐ

Ֆրանսիայո՞ւմ եմ ես:

ՔԷՆՏ

Դուք ձեր սեփական պետութեան մէջ էք:

ԼԻՐ

Մի՛ խաբէք դուք ինձ:

ԲԺԻՇԿ

Միամի՛տ եղէք,
Բա՛րի տիրուհի, այն մեծ տագնապը,
Ինչպէս տեսնում էք, բժշկուած է արդ.
Բայց այսուհանդերձ վտանգաւոր է
Նրան յիշեցնել անցած օրերը:
Խնդրեցէ՛ք ներս գալ, եւ մի վրդովէք
Նրա հանգիստը, մինչ լաւ կազդուրուի:

ԿՈՐԴԵԼԻԱ

Ձեր մեծութիւնը արդեօք կամք չունի՞
Մի քիչ քայլելու:

ԼԻՐ

Պէտք է ներես ինձ,
Աղաչում եմ քեզ, մոռացի՛ր եւ ինձ
Ների՛ր, քանզի ես ծեր եմ եւ տխմար:

**Դուրս են գնում Լիրը, Կորդելիան, բժիշկը եւ սպասաւորները:**

ԱՍՊԵՏ

Ուրեմն ճի՞շտ է Կորնվալի դուքսի
Սպանուելը, տէ՛ր:

ՔԷՆՏ

Բոլորովին ճիշտ:

ԱՍՊԵՏ

Ո՞վ է իր զօրքի հրամանատարը:

ՔԷՆՏ

Ինչպէս պատմում են՝ Գլոստէրի կոմսի
Ապօրէն որդին:

ԱՍՊԵՏ

Էդգարն, ասում են,
Աքսորուած որդին, Քէնտի կոմսի հետ
Գերմանիայում են:

ՔԷՆՏ

Տարբեր լուրեր կան,
Ժամանակ է արդ զգոյշ լինելու,
Պետութեան զօրքը մեծ արագութեամբ
Առաջանում է:

ԱՍՊԵՏ

Այնպէս է թւում,
Որ հանդիպումը արիւնոտ կլինի:
Մնաք բարով, տէ՛ր:

**Դուրս է գնում:**

ՔԷՆՏ

Յատակագիծս

Եւ ծպատակս մօտենում են արդ
Իրենց կատարման: Կա՛մ լաւ է, կա՛մ վատ
Լինելու, նայած այսօրուայ մարտին:

**Դուրս է գնում:**





# ԱՐԱՐՈՒԱԾ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## ՏԵՍԱՐԱՆ Ա.

**Անգլիական բանակը Դուվրի մօտ**
**Մտնում են թմբուկներով եւ դրօշակներով Էդմոնդը, Ռեգանը, ասպետներ եւ զինուորներ:**

ԷԴՄՈՆԴ
Իմացէ՛ք դուքսից, թէ նա հաստա՞տ է
Իր որոշման մէջ, թէ՞ որեւէ բան
Դրդել է նրան փոխել իր միտքը:
Նա փոփոխամիտ եւ հակասող է.
Լո՛ւր բեր ինձ նրա վերջնական կամքից:

**Մի սպայ դուրս է գնում:**

ՌԵԳԱՆ
Քրոջս ծառային պէտք է մի փորձանք
Պատահած լինի:

ԷԴՄՈՆԴ
Երկիւղ կա, տիկի՛ն:

ՌԵԳԱՆ
Լա՛ւ, ազնի՛ւ պարոն, ձեզ քաջ յայտնի է,

Թէ որքան բարիք ցանկանում եմ ձեզ.
Ասացէ՛ք, բայց ճիշտ. անկե՛ղծ ասացէք...
Չէ՞ք սիրում արդեօք քրոջս...

ԷԴՄՈՆԴ

Միայն

Յարգալից սիրով:

ՌԵԳԱՆ

Բայց երբեւիցէ
Դուք չէ՞ք գնացել արգելուած շաւղով:

ԷԴՄՈՆԴ

Ո՛չ, այդ կարծիքը մոլորում է ձեզ:

ՌԵԳԱՆ

Ես կասկածում եմ, որ դուք նրա հետ
Այնքան միացել, մտերմացել էք,
Որ դուք նրանն էք:

ԷԴՄՈՆԴ

Այդպէս չէ, տիկի՛ն.
Երդւում եմ պատւով:

ՌԵԳԱՆ

Ա՛խ, նա ինձ համար
Անտանելի է, սիրելի իմ լո՛րդ.
Մի՛ լինէք նրան այդչափ ընտանի:

ԷԴՄՈՆԴ

Միամի՛տ եղէք, ահա նա եկաւ
Իր ամուսնու հետ:

**Մտնում են թմբուկներով եւ դրօշակներով Ալբանին, Գոներիլը եւ զինուորներ:**

ԳՈՆԵՐԻԼ
*(Առանձին).*
Ես աւելի շուտ համաձայն եմ այս
Կռւում պարտութիւն կրել, քան թոյլ տալ,
Որ մեզ անջատէ քոյրս իրարից:

ԱԼԲԱՆԻ
Սիրեցեալ իմ քո՛յր, քեզ բարի գալո՛ւստ.
*(Էդմոնդին).*
Պարո՛ն, լսել եմ, արքան եկել է
Իր աղջկայ մօտ բոլոր նրանց հետ,
Ում որ վարչական մեր խստութիւնը
Առիթ է տուել բողոքել մեր դէմ:
Ինձ անհնար է քաջ հանդիսանալ,
Երբ որ իմ դատը չէ արդար մի դատ:
Եթէ այս գործում մենք զէնք ենք առել՝
Այն պատճառով է, որ Ֆրանսիան
Մտել է այսօր հայրենիքը մեր,
Ոչ այն, որ նեցուկ է հանդիսանում
Մեր թագաւորին եւ ուրիշներին,
Որոնք, կարծում եմ, ունեն շատ արդար
Եւ լուրջ պատճառներ դուրս գալու մեր դէմ:

ԷԴՄՈՆԴ
*(Հեգնական).*
Դո՛ւքս, խօսում էք դուք շատ ազնիւ կերպով:

ՌԵԳԱՆ
Բայց ի՞նչ կարիք կայ տրամաբանելու:

ԳՈՆԵՐԻԼ
Պէտք է միանանք ընդդէմ թշնամու.
Ներքին անձնական գժտութիւնները
Պէտք է վերանան:

ԱԼԲԱՆԻ

Ուրեմն կազմենք
Ձեր ռազմիկների խորհրդակցութեամբ
Մեր ծրագիրը:

ԷԴՄՈՆԴ

Լաւ, մի քիչ յետոյ
Ես ձեզ մօտ կգամ:

ՌԵԳԱՆ

Քո՛յր, կգա՞ս մեզ հետ:

ԳՈՆԵՐԻԼ

Ո՛չ:

ՌԵԳԱՆ

Շատ յարմար է, խնդրեմ, ե՛կ մեզ հետ:

ԳՈՆԵՐԻԼ

*(Առանձին).*

Օհո՛, հասկացայ: Շատ լաւ, գալիս եմ:

**Ուզում է դուրս գնալ, երբ մտնում է Էդգարը՝ ծպտեալ:**

ԷԴԳԱՐ

Ձեր բարձրութիւնը եթէ արժանի
Համարի խօսել մի խեղճ մարդու հետ,
Թող լսէ նրան:

ԱԼԲԱՆԻ

*(Գնացողներին).*

Ես ձեզ կհասնեմ:

Խօսի՛ր:

**Էդմոնդը, Ռեգանը, Գոներիլը եւ հետեւորդները դուրս են գնում:**

ԷԴԳԱՐ

Նախքան սկսէք ճակատամարտը՝
Բացէ՛ք նամակն այս: Թէ յաղթող լինէք՝
Թմբուկի ձայնով կանչեցէք նրան,
Ով այս ձեզ բերեց:
Թէպէտ ձեր աչքին խղճուկ եմ թւում,
Բայց ես մի մարտիկ ճանդէս կբերեմ,
Որ կապացուցի այստեղ գրուածը:
Իսկ եթէ պարտուէք՝ ձեր դերն այս կեանքում
Արդէն վերջացած կլինի, եւ էլ
Անմիտ կդառնան դաւերը ձեր դէմ:
Բախտը ձեզ օգնէ՛:

ԱԼԲԱՆԻ

Կա՛ց, մինչեւ կարդամ:

ԷԴԳԱՐ

Արգելուած է ինձ. առիթը երբ գայ՝
Թող մունետիկը ձայն տայ մի անգամ,
Եւ ես կերեւամ:

**Դուրս է գնում:**

ԱԼԲԱՆԻ

Լաւ, գնաս բարո՛վ:
Մի ակնարկ նետեմ նամակի վրայ:

**Էդմոնդը կրկին ներս է գալիս:**

ԷԴՄՈՆԴ

Թշնամին ահա երեւաց, զօրքը
Շարքի՛ բերեցէք: Ահա թշնամու
Բոլոր ուժերի մօտաւոր հաշիւն,
Որ ձեռք է բերուած խոր խուզարկութեամբ:
Կարիք կայ, սակայն, որ արդ շտապենք:

ԱԼԲԱՆԻ
Պատրաստ ենք հասնել իր ժամանակին:

**Դուրս է գնում:**

ԷԴՄՈՆԴ
Ես սէր եմ ուխտել երկու քոյրերին,
Իսկ նրանք իրար ատում են այնպէս,
Ինչպէս խայթուողը ատում է իժին:
Ո՞ր մէկին առնեմ, մէկի՞ն, երկուսի՞ն:
Ոչ մէկի՞ն գուցէ:
Ոչ մէկին, սակայն, ես չեմ ստանայ,
Եթէ երկուսն էլ կենդանի մնան:
Այրու հետ կապուել նշանակում է
Կատաղեցնել նրա քրոջը,
Եւ շատ դժուար է այդ գլուխ բերել,
Քանի դեռ ողջ է իր ամուսինը:
Առայժմ սակայն դեռ օգտագործենք
Նրա օգնութիւնն այս պատերազմում,
Իսկ յետոյ կինը եթէ կամենայ
Ազատուել նրա ներկայութիւնից,
Թող մի ճար գտնի, որով անյապաղ
Կարենայ նրան մէջտեղից հանել:
Իսկ այժմ նա լոկ այն է մտորում,
Որպէսզի Լիրին եւ Կորդելիային
Ցոյց տայ օգնութիւն եւ կարեկցութիւն...
Բայց յաղթանակից յետոյ երբ նրանք
Ընկնեն իմ ձեռքը, չեն տեսնի երբէք
Գթութեան երես: Բաւական է, արդ
Պաշտպանուել է պէտք եւ ոչ թէ դատարկ
Տրամաբանել:

**Դուրս է գնում:**

## ՏԵՍԱՐԱՆ Բ.

**Աղմուկ ներսից, բեմի վրայով անցնում են թմբուկներով եւ դրօշակներով Լիրը, Կորդելիան՝ իրենց զօրքերի հետ: Նրանցից յետոյ մտնում են Էդգարն ու Գլոստէրը:**

ԷԴԳԱՐ
Ե՛կ, հա՛յր, ընդունի՛ր ծառի հովանին,
Իբրեւ բարերար մի հանգստավայր,
Եւ աղօ՛թք արա, որ արդարութեան
Գործն յաղթանակի: Եթէ գամ եթէ ես՝
Կբերեմ ինձ հետ սփոփիչ լուրեր:

**Էդգարը գնում է...***

## ՏԵՍԱՐԱՆ Գ.

**Մտնում է յաղթական թմբուկներով եւ դրօշակներով Էդմոնդը: Լիրը եւ Կորդելիան, որպէս գերիներ, հետեւում են նրան: Զինուորներ, սպաներ եւ այլն**

ԷԴՄՈՆԴ
Մի քանի սպայ թող տանեն սրանց
Եւ լաւ պահպանեն մինչեւ յայտնուի
Նրանց տէրերի գերագոյն կամքը:

ԿՈՐԴԵԼԻԱ
Շատերն են եղել մեզանից առաջ,
Որ ազնիւ գործի ձգտելու համար
Արժանացել են վատագոյն բախտի:
Քեզ համար միայն, ո՛վ թշուառ արքայ,
Դառնանում եմ ես:
Եթէ ես մենակ լինէի այստեղ, կարհամարհէի

---

* Մեքենագիր օրինակում այսուհետեւ 11 տող պակաս է (Հ.Բ.):

Կեղծաւոր բախտի թշնամանանքը:
Չե՞նք կարող արդեօք տեսնել մենք մեր այն
Դուստրերին կամ այն քոյրերին:

ԼԻՐ

Ո՛չ, ո՛չ,
Ո՛չ, գնանք բանտը, երկուսս մենակ
Կերգենք միասին, ինչպէս թռչուններ
Վանդակում փակուած:
Երբ դու ինձանից օրհնութիւն խնդրես,
Չոքած քո առջեւ՝ ինքս քեզանից
Ներում կհայցեմ. այսպէս մենք կապրենք,
Կաղօթենք, կերգենք եւ հին հէքեաթներ
Կպատմենք իրար եւ կծիծաղենք
Այն թիթեռների վրայ ոսկեթեւ,
Որ որպէս խղճուկ թշուառականներ
Խօսում են ճղճիմ գործերի մասին,
Լուրերի մասին այն պալատական.
Մենք էլ նրանցից կիմանանք այդ սին
Գործերի մասին՝ թէ ով է ընկել,
Ով է բարձրացել կամ հաստատացել,
Ո՛ւմ գործերն են վատ եւ ո՛ւմ՝ յաջողակ,
Եւ այդ գործերի էութիւնը լոկ
Դիտելով՝ մենք մեզ կբացատրենք
Իրերի գաղտնիքն, ինչպէս Աստուծոյ
Երկու ընտրեալներ կամ առաքեալներ...
Եւ այսպէս, բանտի պարիսպների մէջ
Կմաշենք բազում մեծամեծների
Խմբեր ու դասեր, որոնք լուսնի հետ
Կելնեն ու կիջնեն, կելնեն ու կիջնեն...

ԷԴՄՈՆԴ

Հեռացրէ՛ք սրանց:

ԼԻՐ

Ո՛վ իմ Կորդելիա,

Այսպիսի վսեմ զոհողութիւններն
Աստուածներն իրենք կնդրուկով կօծեն:
Արդեօք իսկապէ՞ս գտել եմ ես քեզ.
Ով մեզ իրարից անջատել ուզէ՝
Պէտք է երկնքից կրակ բերէ ցած
Եւ մեզ այստեղից հրով հալածէ՝
Աղուէսներին են ինչպէս հալածում:
Սրբի՛ր աչքերդ, բորոտութիւնը
Կկրծէ նրանց մարմինն ու կաշին,
Նախքան կարենան արտասուել տալ մեզ:
Նախքան այդ՝ նրանք կմեռնեն քաղցից:
Դէ, գնա՛նք:

**Լիրը եւ Կորդելիան դուրս են գնում՝**
**շրջապատուած պահակներով:**

ԷԴՄՈՆԴ
Մո՛տ եկ, գնդապե՛տ: Լսի՛ր, թուղթն այս ա՛ռ
Եւ մեկնի՛ր դու բանտ նրանց ետեւից,
Քեզ մի աստիճան բարձրացրել եմ ես,
Եթէ կատարես ինչ որ այս գրքում
Հրամայուած է, փառքի շաւիղը
Կբանաս քո դէմ: Իմացի՛ր դու լաւ.
Այնպէս են մարդիկ, ինչպէս աշխարհը,
Զինուորի համար անվայել բան է
Լինել փափկասիրտ: Այս գործը, որ քեզ
Յանձնարարում եմ, վէճ չի պահանջում.
Կա՛մ՝ այո, կա՛մ՝ ոչ. կա՛մ կկատարես,
Կա՛մ բախտ որոնիր այլ միջոցներով:

ԳՆԴԱՊԵՏ
Համաձայն եմ, տէ՛ր:

ԷԴՄՈՆԴ
Ուրեմն՝ ի գո՛րծ.
Եւ քեզ երջանիկ մի մարդ համարիր,

Եթէ կատարես իմ հրամանը:
Լսո՞ւմ ես հիմա, հէնց իսկոյն եւեթ
Ինչպէս գրուած է՝ այնպէս էլ կանես:

ԳՆԴԱՊԵՏ

Ես սայլ չեմ կարող քաշել կամ ուտել
Չոր խոտ, բայց եթէ գործն այդ մի մարդու
Ուժերից վեր չէ, ես կկատարեմ:

**Դուրս է գնում:**

**Շեփորներ. մտնում են Ալբանին, Գոներիլը,**
**Ռեգանը եւ զինուորներ:**

ԱԼԲԱՆԻ

*(Էդմոնդին).*

Դուք մեծ քաջութիւն ցոյց տուիք այսօր,
Բախտն էլ ձեզ, միլո՛րդ, լաւ առաջնորդեց.
Գերի վերցրիք դուք այն անձերին,
Որոնք այս կռւում ոսոխներ էին:
Մենք պահանջում ենք այժմ, որ նրանց
Յանձնէք մեր կամքին, եւ մենք նրանց հետ
Կվարուենք այնպէս, ինչպէս վայել է
Թէ՛ նրանց դիրքին, թէ՛ մեր սեփական
Ապահովութեան:

ԷԴՄՈՆԴ

Ես յարմար գտայ,
Տէ՛ր իմ, զառամեալ այդ թագաւորին
Առնել խորագոյն կալանքի ներքոյ,
Նրա տարիքը, առաւել եւս
Նրա տիտղոսը՝ հմայքներ ունեն
Միամիտ, ռամիկ սրտերի համար
Եւ ընդունակ են մեր դէմ դարձնել
Այն նիզակները, որ հլու են մեզ:
Այդ նոյն պատճառով ես ուղարկեցի
Նաեւ թագուհուն: Պատրաստ են նոքա

Վաղը կամ այլ օր ներկայանալ ձեզ,
Ուր ժողով կազմէք: Բայց այժմ մենք դեռ
Թափում ենք անա արիւն ու քրտինք,
Դեռ ռազմի դաշտում դիեր կան ընկած
Բարեկամների. ամենից արդար
Պատերազմները անէծք են բոլոր
Այն անձանց համար, որ զգացել են
Նրանց խոցերը: Թէ՛ Կորդելիայի
Եւ թէ՛ նօր դատը պէտք է կայանայ
Մի յարմար տեղում:

ԱԼԲԱՆԻ

Ներեցէ՛ք, պարո՛ն:
Ես այս կռւի մէջ համարում եմ ձեզ
Մի պարզ հպատակ եւ ոչ թէ եղբայր:

ՌԵԳԱՆ

Մենք այդ տիտղոսը բարեհաճում ենք
Շնորհել նրան: Կարծում եմ՝ հարկ էր
Մեր ցանկութիւնը մեզանից լսել,
Նախքան բարբառել այդքան բարձրաձայն:
Նա առաջնորդեց մեր բանակներին
Ե՛ւ իմ անունից, ե՛ւ իմ փոխարէն:
Կարող է նման մի հրամանատար
Վեհութեամբ կանգնել եւ ձեր եղբայրը
Անուանել իրեն:

ԳՈՆԵՐԻԼ

Շատ մի՛ք տաքանա.
Նա իր սեփական արժանիքներով
Աւելի բարձր է, քան ձեր շնորհած
Այդ պաշտպանութեամբ:

ՌԵԳԱՆ

Շնորհիւ տուածս իրաւունքների
Նա հաւասար է լաւագոյններին:

ԳՈՆԵՐԻԼ
Ամենամեծը հէնց այն կլինէր,
Որ պսակուէիք:

ՌԵԳԱՆ
Ծաղրը շատ անգամ գուշակութիւն է:

ԳՈՆԵՐԻԼ
Կամա՛ց, քո՛յր, կամա՛ց,
Այն աչքը, որով տեսել էք դուք այդ՝
Քիչ շիլ է եղել:

ՌԵԳԱՆ
Տկար եմ, տիկի՛ն,
Եթէ ոչ՝ սրտանց ես ձեզ կտայի
Ձեր պատասխանը:
*(Էդմոնդին).*
Զօրապե՛տ իմ, ա՛ռ
Զօրքերս բոլոր եւ երկիրներս,
Տիրի՛ր նրանց հետ նաեւ ինձ: Ահա՛
Բերդն անձնատուր է լինում լիովին,
Վկայ է աշխարհ, որ քեզ՝ ինձ վրայ
Կարգում եմ ահա տէր եւ ամուսին:

ԳՈՆԵՐԻԼ
Ուրեմն յոյս ունես տիրանա՞լ նրան:

ԱԼԲԱՆԻ
*(Գոներիլին).*
Այդ քեզանից չէ կախուած, տիրուհի՛:

ԷԴՄՈՆԴ
Եւ ոչ էլ կախուած քո բարի կամքից:

ԱԼԲԱՆԻ
Դեռ կա՛ց, խօ՛սք լսիր:

Էդմո՛նդ, քեզ ահա ձեռքակալում եմ,
Իբրեւ պետական մի դաւաճանի,
Եւ այս ոսկեզօծ օձին էլ քեզ հետ:

Ցոյց է տալիս Գոներիլին, ապա դառնալով Ռեգանին.

Գալով պահանջիդ, գեղեցիկ քո՛յր իմ,
Ես ժխտում եմ այն յօգուտ իմ կնոջ.
Երկրորդ դաշինքով նա նշանուած է
Այս պարսիկի հետ: Եւ ես, որ նրա
Ամուսինն եմ, արդ հակառակ եմ ձեր
Ամուսնութեանը, իսկ դուք, տիրուհի՛,
Եթէ ունէք կամք ամուսնանալու,
Ուրեմն ի՛նձ հետ սիրաբանեցէք.
Իմ տիկինն արդէն հարսնախօսուած է:

ԳՈՆԵՐԻԼ

Այս ի՞նչ կատակ է:

ԱԼԲԱՆԻ

Զինուած ես, Գլոստէ՛ր,
Թող հնչէ փողը, եթէ դուրս չգայ
Ոչ ոք՝ երեսիդ խփելու համար
Քո պիղծ, ակներեւ, անթիւ դաւերը,
Պատրաստ եմ ինքս, ահա գրաւը:

Զգում է նրան իր ձեռնոցը.

Սիրտդ ճեղքելով ես կապացուցեմ,
Նախքան մի փշուր հաց ճաշակելս,
Որ դու ոչնչով պակաս չես, քան այն,
Ինչ որ ասացի:

ՌԵԳԱՆ

Ա՛խ, ես հիւանդ եմ:

ԳՈՆԵՐԻԼ
*(Առանձին).*

Թէ չլինէիր, ես ոչ մի թոյնի
Չէի հաւատայ:

ԷԴՄՈՆԴ
Ահա փոխարէնն իմ երաշխիքը.

**Զգում է իր ձեռնոցը.**

Եթէ աշխարհում գոնէ մէկը կայ,
Որ ինձ դաւաճան կոչել խիզախի,
Նա ստախօս է, որպէս սրիկայ,
Կանչի՛ր քո փողով, ով էլ որ դուրս գայ,
Նրա կամ քո դէմ, կամ թէ բոլորիդ՝
Ես կպաշտպանեմ ճշմարտութիւնը
Եւ իմ պատիւը:

ԱԼԲԱՆԻ
Է՛յ դու, մունետի՛կ:

ԷԴՄՈՆԴ
Մունետի՛կ, դէ շո՛ւտ:

**Մտնում է մունետիկը:**

ԱԼԲԱՆԻ
Յոյսդ դիր միայն քո անձի՛ վրայ.
Քո զինուորները խմբուած են այնտեղ
Լոկ իմ անունով եւ այժմ նրանք
Իմ անունից էլ արձակուած են տուն:

ՌԵԳԱՆ
Հիւանդութիւնս սաստկանում է խիստ:

ԱԼԲԱՆԻ

*(Իր թիկնապահներին).*

Նա շատ հիվանդ է, տարե՛ք վրանս:

**Ռեգանին տանում են:**

Դէ ե՛կ, մունետի՛կ, փո՛ղ հնչեցրէք,
Իսկ դու բարձրաձայն կարդա՛ այս թուղթը:

ՄԻ ՍՊԱՅ

Հնչեցրո՛ւ փողդ:

**Փողը հնչում է:**

ՄՈՒՆԵՏԻԿ

*(Կարդում է).* «Եթէ կայ զօրքի շարքերում մի որեւէ աստիճանաւոր կամ դիրքի տէր մարդ, որը կամենում է հաստատել ընդդէմ Էդմոնդի, ինքնակալ կոմս Գլոստէրի, որ նա յանցաւոր է բազմաթիւ դաւաճանութիւններով, թող դուրս գայ փողի երրորդ հնչիւնին. Էդմոնդը պատրաստ է ինքն իրեն պաշտպանելու»:

ԷԴՄՈՆԴ

Հնչեցրո՛ւ:

**Առաջին փող**

ՄՈՒՆԵՏԻԿ

Կրկի՛ն:

**Երկրորդ փող**

ՄՈՒՆԵՏԻԿ

Կրկի՛ն:

**Երրորդ փող**

**Փողի ձայն ներսից, Էդգարը մտնում է զինուած, նրա առջեւից քայլում է մի փողհար:**

ԱԼԲԱՆԻ

*(Փողհարին).*

Հարցրո՛ւ նրանից իր նպատակը.
Ինչո՞ւ դուրս եկաւ այս փողի ձայնին:

ՄՈԻՆԵՏԻԿ

Ո՞վ ես դու, անունդ ու աստիճանդ.
Եւ ի՞նչ պատճառով պատասխանեցիր
Այս մարտակոչին:

ԷԴԳԱՐ

Ես անուն չունեմ.
Դաւաճանութեան ատամը նրան
Կրծել է, մաշել, որդնակեր արել.
Բայց ես ազնիւ եմ, որքան նա, ում դէմ
Ես եկայ ահա մենամարտելու:

ԱԼԲԱՆԻ

Ո՞վ է այդ մարդը:

ԷԴԳԱՐ

Ո՞վ է այն մարդը,
Որ ձայն է տալիս յանուն Էդմոնդի,
Գլոստէրի կոմսի:

ԷԴՄՈՆԴ

Ես եմ. ի՞նչ ունես ասելու դու ինձ.

ԷԴԳԱՐ

Դո՛ւրս քաշիր սուրդ, որ եթէ յանկարծ
Խօսքերս խոցեն անբասիր մի սիրտ՝
Ձեռքդ կարենայ վրէժխնդիր լինել.
Ահա եւ իմը:

**Քաշում է սուրը:**

Տես, այս էահա
Պատուիս, երդումիս եւ ասպետութեանս
Միակ իրաւունքն ու ապաւէնը:
Հաստատում եմ ես ահա քո ուժիդ,
Հասակիդ, դիրքիդ, բարձրութեանդ ընդդէմ
Հակառակ քո այդ յաղթական սրիդ,
Որ դաւաճան ես, անհաւատարիմ
Դու աստուածների, քո հօր, քո եղբօր
Եւ ազնուագոյն այս իշխանի դէմ,
Որ դու՝ քո գլխի բարձրագոյն կէտից
Մինչեւ ոտքերիդ տակ փռուած փոշին,
Գորտի պէս ժահրոտ մի դաւադիր ես:
Եթէ ասես «ոչ», այս սուրն, այս ձեռքը,
Եւ իմ ունեցած արիութիւնը
Պարտք են համարում քո սրտի վրայ
Հաստատել, որ դու մի ստախօս ես:

ԷԴՄՈՆԴ
Խոհեմութիւնը դրդում էր, որ ես
Նախ իմանայի անունդ, բայց քո
Դէմքը գեղեցիկ, պատերազմասէր
Եւ լեզուդ, որ ինձ յոյս են ներշնչում,
Որ ունես իրօք դու ազնիւ ծագում,
Ինձ թոյլ են տալիս ուշ չդարձնել
Այդ առարկութեանց վրայ, թէեւ ես,
Ըստ ասպետական կարգ ու կանոնի,
Կարող էի այդ պատրուակ բերել
Արհամարհելու խօսքերդ, բայց ես
Զզուանքով ահա ետ եմ շպրտում՝
Քո դէմքին բոլոր քո ասած զազիր
Մեղադրանքը դաւաճանական,
Քո դժոխային ստախօսութեամբ
Հէնց քեզ եմ խոցում, քանի որ դրանք
Ծեղւում են իրենց նշանի կէտից
Եւ վէրք չեն տալիս իմ սրտին երբէք.
Սակայն իմ սրով ես նրանց առաջ

Ժամփայ կբանամ, ուր նրանք ընդմիշտ
Կմնխուեն, ընդմիշտ կհանգստանան:
Հնչեցէ՛ք, փողե՛ր:

**Փողեր. մենամարտում են, Էդմոնդը ընկնում է:**

ԱԼԲԱՆԻ
Խնայի՛ր, խղճա՛:

ԳՈՆԵՐԻԼ
Խաբուեցիր, Գլո՛ստէր,
Չէիր պարտաւոր դու դուրս գալ անյայտ
Ախոյեանի դէմ: Ո՛չ, դու պարտուած չես,
Այլ զոհ ես միայն մի խարդախ դաւի
Եւ խաբէութեան:

ԱԼԲԱՆԻ
Փակեցէ՛ք, տիկի՛ն, ձեր բերանը դուք.
Եթէ ոչ, ես այս թղթով կփակեմ:
Բռնի՛ր այս, պարո՛ն:

**Թուղթը ցոյց է տալիս Էդմոնդին, յետոյ Գոներիլին, որ չանք է անում խլել այն, բայց իզուր:**

Դու ստո՛ր, քան այլ որեւէ անուն,
Կարդա՛ սեփական քո չարութիւնը,
Մի՛ պատռիր, տիկի՛ն, ես նկատում եմ,
Որ ծանօթ է քեզ:

**Տալիս է նամակը Էդմոնդին:**

ԳՈՆԵՐԻԼ
Դիցուք ծանօթ է.
Օրէնքն իմ կողմն է եւ ոչ քո կողմը,
Ո՞վ կյանդգնի ինձ դատապարտել:

ԱԼԲԱՆԻ

Միա՛ղ, այս թուղթը դու չե՞ս ճանաչում:

ԳՈՆԵՐԻԼ

Ինչո՞ւ ես դու այդ հարցնում ինձանից:

*Դուրս է գնում:*

ԱԼԲԱՆԻ

*(Մի սպայի).*

Հետեւի՛ր նրան. նա յուսահատ է,
Կիսացնորուած:

ԷԴՄՈՆԴ

Բոլոր մեղքերը,
Որոնց մէջ դու ինձ ամբաստանեցիր,
Կատարել եմ ես եւ դեռ աւելին,
Դեռ շատ աւելին. ժամանակը լոկ
Կյայտնէ դրանք. դա անցաւ... ես էլ:
Բայց ասա՛ դու ինձ, ո՞վ ես դու, օ՛, դու,
Որին բախտն ահա շնորհեց իմ դէմ
Այս յաղթանակը, եթէ դու ազնիւ
Մարդ ես ծնունդով՝ ես ներում եմ քեզ:

ԷԴԳԱՐ

Թող այդ ներումը փոխադարձ լինի.
Էդմո՛նդ, ես արեամբ նոյնքան տոհմիկ եմ,
Որքան դու ինքդ. թէ աւելին չեմ,
Ապա եւ իմ դէմ գործած մեղքերդ
Աւելի են մեծ: Անունս է Էդգար.
Քո հօր որդին եմ: Աստուածները միշտ
Արդարադատ են. նրանք մեր սիրած
Մոլութիւնները գործիք են շինում՝
Մեզ մտրակելու, պատժելու համար:
Այն պիղծ ու մոլի անկողինը, ուր
Մեր հայրը մի օր քեզ ծնունդ տուեց,
Նրանից խլեց լոյսը աչքերի:

ԷԴՄՈՆԴ

Դու ճիշտ ասացիր. ճշմարիտ է այդ։
Բոլորեց անիւն իր շրջադարձը,
Եւ այստեղ եմ ես։

ԱԼԲԱՆԻ

*(Էդգարին).*

Ինձ թւում էր, թէ
Քայլուածքդ է միայն կուահել տալիս
Արքայավայել մի ազնւութիւն։
Պէտք է քեզ գրկեմ. թող կսկիծ ու ցաւ
Սիրտս յօշոտեն, եթէ երբեւէ
Ատել եմ ես քեզ կամ քո հօրը խեղճ։

ԷԴԳԱՐ

Յարգելի՛ իշխան, այդ լաւ գիտեմ ես։

ԱԼԲԱՆԻ

Ո՞ւր էիր պահուել, ինչպէ՞ս իմացար
Հօրդ պատահած դժբախտութիւնը։

ԷԴԳԱՐ

Նրա հետ ես այն կրեցի, միլո՛րդ։
Լսեցէ՛ք հիմա մի կարճ պատմութիւն,
Եւ երբ վերջանայ, երանի՜ սիրտս
Պայթի, դադարի։ Որպէսզի խոյս տամ
Այն արիւնահեղ դատավճիռից,
Որ այնքան մօտից հալածում էր ինձ
(Ինչ քաղցր է կեանքը, որ յօժար ենք մենք
Ամէն ժամ կրել մահուան տառապանքը,
Քան թէ մի անգամ մեռնել, վերջանալ).
Ես հագայ խենթի ցնցոտիներ խեղճ,
Ինքս ինձ տուի այնպիսի մի տեսք,
Որ շներն անգամ խոյս էին տալիս։
Հէնց այդ զգեստով ես հանդիպեցի
Հօրս, որ դեռ նոր կորցրել էր իր

Անգին աչքերի լոյսը կաթոգին.
Ես իսկոյն դարձայ նրան ուղեկից
Եւ առաջնորդող. ես հաց մուրացի,
Փրկեցի նրան յուսալքումից,
Եւ (ի՜նչ սխալմունք) երբէք ես նրան
Յայտնի չարեցի իմ ով լինելը:
Բայց, կէս ժամ առաջ, երբ զինուած էի,
Թէեւ մեծայոյս, բայց ոչ լիովին
Վստահ արդ տարած իմ յաղթանակին,
Խնդրեցի նրան, որ ինձ շնորհի
Իր օրհնութիւնը եւ ծայրէիծայր,
Պատմեցի նրան թափառաշրջիկ
Իմ պանդխտութեան պատմութիւնը ողջ.
Բայց նրա սիրտը՝ արդէն կիսաբեկ,
Աւա՜ղ, անկարող լինելով կրել
Ցնծութիւն ու վիշտ՝ երկու ծայրայեղ
Կրքերի պայքար, ժպտաց ու պայթեց:

ԷԴՄՈՆԴ

Քո այդ խօսքերը սիրտս շարժեցին,
Եւ գուցէ նրանք լինեն բարեբեր.
Բայց շարունակի՛ր, ինձ թւում է, թէ
Դեռ շատ բան ունես դու մեզ պատմելու:

ԱԼԲԱՆԻ

Եթէ աւելի տխրալի բաներ
Ունես ասելու՝ քեզ համար պահիր.
Այլեւս չունեմ ես ուժ լսելու:

ԷԴԳԱՐ

Սա մի վերջակէտ կարող էր լինել
Այն անձանց համար, որ վիշտ չեն սիրում:
Բայց կայ մի ուրիշ այր աղէտաւոր,
Որի վիշտը մեծ չափ չի ճանաչում՝
Գերազանցելով ծայրայեղն անգամ:
Մինչդեռ գոռալով ես ողբում էի

Մօտ եկաւ մի մարդ, որ տեսել էր ինձ
Ամենանուաստ իմ վիճակի մէջ
Եւ խորշել էր իմ ընկերութիւնից.
Տեսնելով սակայն, թէ ո՞վ է այդքան
Տառապանք կրած մարդը, նա ուժգին
Փաթաթուեց վզիս եւ այնպէս ոռնաց,
Կարծես երկինքն էր ուզում սասանել:
Գրկեց նա հօրս եւ պատմեց ապա
Թէ՛ իր, թէ՛ Լիրի՝ արքայի մասին
Այնքան սրտաշարժ մի եղելութիւն,
Որի նմանը մարդ չի լսել դեռ.
Պատմելիս նրա վիշտը սաստկացաւ,
Եւ կեանքի թելերն արդէն թուլացած
Կտրատւում էին, երբ փողը հնչեց,
Եւ ես ստիպուած թողեցի նրան:

ԱԼԲԱՆԻ

Ո՞վ էր այդ մարդը:

ԷԴԳԱՐ

Քէնտն էր, ազնի՛ւ տէր.
Աքսորուած Քէնտը, որ ծպտեալ տեսքով
Հետեւում էր միշտ այն թագաւորին.
Որ նրան քշեց: Կատարում էր նա
Ծառայութիւններ, որ անվայել են
Անգամ ստրուկին:

**Շտապով մտնում է մի ասպետ՝ մի արիւնաշաղախ դաշոյն ձեռքին:**

ԱՍՊԵՏ

Օգնութի՛ւն, շտա՛պ,
Օգնութեա՛ն հասէք:

ԷԴԳԱՐ

Ի՞նչ, ի՞նչ օգնութիւն:

ԱԼԲԱՆԻ
Դէ խօսի՛ր, ա՛յ մարդ:

ԷԴԳԱՐ
Ի՞նչ է այս դաշոյնն արիւնաշաղախ:

ԱՍՊԵՏ
Դեռեւս տաք է. նա դեռ ծխում է...
Նոր է դուրս եկել հէնց նրա սրտից...

ԱԼԲԱՆԻ
Ո՞վ, մա՛րդ, ո՞վ մեռաւ, խօսի՛ր:

ԱՍՊԵՏ
Ձեր կինը, տէ՛ր իմ, ձեր կինը մեռաւ,
Եւ նրա քոյրն էլ հէնց նրա ձեռքով
Թունաւորուած է: Նա խոստովանեց:

ԷԴՄՈՆԴ
Երկուսի հետ էլ նշանուած էի.
Այժմ երեքով ամուսնանում ենք
Հէնց նոյն վայրկեանում:

Մտնում է Քէնտը:

ԱԼԲԱՆԻ
Ողջ են, թէ մեռած՝
Թող բերեն նրանց մարմիններն այստեղ:

Ներս են բերում Գոներիլի եւ Ռեգանի մարմինները:

Երկնային արդար այս դատաստանը
Թէեւ լցնում է մեզ զարհուրանքով,
Բայց մեր սրտերի գութը չի շարժում:

ԷԴԳԱՐ
Ահա Քէնտը, տէ՛ր:

ԱԼԲԱՆԻ

Աւա՛ղ, այս նա է.
Պարագաները մեզ թոյլ չեն տալիս
Ողջունել անգամ, ինչպէս մեր բարի
Կենցաղն ու կարգն են պահանջում:

ՔԷՆՏ

Ես լոկ
Իմ տէր արքային մի բարի գիշեր
Մաղթելու համար եմ այստեղ եկել:
Այստեղ չէ՞ միթէ:

ԱԼԲԱՆԻ

Ի՜նչ մոռացութիւն:
Ո՞ւր է թագաւորն, Էդմո՛նդ, եւ ո՞ւր է
Կորդելիան, ասա՛: Քէ՛նտ, տեսնո՞ւմ ես դու
Այս տեսարանը:

ՔԷՆՏ

Աւա՛ղ, այս ի՞նչ է:

ԷԴՄՈՆԴ

Բայց այսուհանդերձ ես սիրուած էի,
Իմ սիրոյ համար ահա սրանցից
Մէկը թոյն տուեց միւսին, ապա
Ինքն էլ կամովին անձնասպան եղաւ:

ԱԼԲԱՆԻ

Ճիշտ է: Ծածկեցէ՛ք նրանց դէմքերը:

ԷԴՄՈՆԴ

Հազիւ թէ կեանքս դեռ շունչ ունի քիչ:
Եւ կամենում եմ, ընդդէմ բնութեան,
Մի բարիք գործել: Մարդ ուղարկեցէ՛ք...
Բայց իսկոյն, իսկոյն... դէպի ամրոցը.
Գրաւոր արուած իմ հրամանը

Մահ է սպառնում թէ՛ արքայ Լիրին,
Թէ՛ Կորդելիային: Մարդ ուղարկեցէ՛ք,
Քանի դեռ ուշ չէ:

ԱԼԲԱՆԻ

Օ՛հ, շտապեցէ՛ք,
Վազեցէ՛ք իսկոյն, դէ շո՛ւտ, շտապէ՛ք:

ԷԴԳԱՐ

Բայց ո՞ւմ մօտ, միլո՛րդ:
*(Էդմոնդին).*

Ո՞ւմ է յանձնուած.
Մի նշա՛ն տուէք, որ հնազանդեն:

ԷԴՄՈՆԴ

Լաւ մտածեցիր, ա՛ռ սուրս եւ տուր
Հարիւրապետին:

ԱԼԲԱՆԻ

Դէ, շո՛ւտ, շտապի՛ր,
Ինչպէս քո կեանքը փրկելու համար:

**Էդգարը գնում է:**

ԷԴՄՈՆԴ

Ես եւ քո կինը հրամայել ենք,
Որ Կորդելիային նա բանտում կախէ
Եւ յայտարարէ, թէ ինքն է իրեն
Յուսահատուելով խեղդամահ արել:

ԱԼԲԱՆԻ

Աստուածները թող ազատեն նրան.
Քիչ հեռո՛ւ տարէք սրան այստեղից:

**Էդմոնդին տանում են:**
**Մտնում է Լիրը՝ մեռած Կորդելիան նրա թեւերի մէջ:**

ԼԻՐ

Ոռնացէ՛ք դէ դուք, ոռնացէ՛ք հիմա,
Անվերջ ոռնացէ՛ք, օ՛հ ի՛նչ քարեղէն
Մարդիկ էք, եթէ ես ունենայի
Ձեր լեզուները եւ ձեր աչքերը,
Այնպէս կանէի, որ կճարճատէր
Երկնի կամարը հիմնովին, ընդմիշտ:
Օ՛հ, արդէն գնա՛ց, գնա՛ց յաւիտեան.
Ճանաչում եմ ես՝ մեռած է մարդը,
Թէ կենդանի է... Իմ դուստրը արդէն
Այնպէս է մեռած, ինչպէս այս հողը:
Հայելի՛ տուէ՛ք, թէ շունչը նրա
Պղտորէ նրան կամ մթնացնէ՝
Ուրեմն նա դեռ կենդանի է... դէ՛...

ՔԵՆՏ

Ա՞յս է աշխարհի վերջին օրն արդեօք,
Վերջին դատաստանն...

ԷԴԳԱՐ

Թէ՞ պատկեր է սա այն արհաւիրքի:

ԼԻՐ

Փետուրը մի քիչ
Շարժւում է, օ՛հ, նա կենդանի է դեռ:
Եթէ ողջ լինի նա՝ այդ այնպիսի
Երջանկութիւն է մեծագոյն, որ դա
Կարող է լինել հատուցում բոլոր
Վշտերի համար, որ կրել եմ ես:

ՔԵՆՏ

*(Արքայի առջեւ ծունկ չոքելով).*

Ո՛չ, բարի իմ տէ՛ր:

ԼԻՐ

Հեռացի՛ր, խնդրեմ:

ԷԴԳԱՐ

Սա ազնիւ Քէնտն է, ձեր բարեկամը:

ԼԻՐ

Կրա՛կ թող թափուի բոլորիդ գլխին,
Դուք, մարդասպաննե՛ր եւ դաւաճաննե՛ր.
Ես կարող էի ազատել նրան,
Բայց արդ նա գնաց այլեւս յաւիտեան:
Կորդե՛լիա, դո՛ւստր իմ, սպասի՛ր մի քիչ.
Դէ ի՞նչ ես ասում: Միշտ նրա ձայնը
Քնքուշ է եղել, ե՛ւ հեզ, ե՛ւ խոնարհ.
Դա կնոջ համար գանձ է թանկագին:
Ես սպանեցի այն սրիկային,
Որ քեզ կախում էր:

ՍՊԱՅ

Ճիշտ է, սպանեց:

ԼԻՐ

Ի՞նչ, չսպանեցի՞. եղել են օրեր,
Երբ իմ պատուական սայրասուր սրով
Ես գետնահար եմ արել բոլորին.
Այժմ ծեր եմ ես. այսքան ցաւ ու վիշտ
Ինձ ուժատել են:
*(Քէնտին).*

Ո՞վ ես դու. լաւ չեն
Աչքերս այնքան էլ, քեզ ուղիղ ասեմ:

ՔԷՆՏ

Եթէ կայ երկու մարդ, որոնց վրայ
Փորձել է բախտը իր ամբողջ ուժը՝
Անչափ սիրելով եւ արհամարհելով,
Դրանցից մէկին տեսնում էք ահա:

ԼԻՐ

Աչքս մթնել է. Քէնտը չե՞ս արդեօք:

ՔԷՆՏ
Ձեր ծառայ Քէնտը. Ո՞ւր է Կայուսը,
Որ ծառայում էր ձեզ նուիրաբար:

ԼԻՐ
Նա մարդ էր ազնիւ, կարող եմ երդուել,
Գիտէր քաջաբար կռուել ու զարկել.
Մեռել է արդէն եւ փտել:

ՔԷՆՏ
Օ՛, ո՛չ.
Ես այդ մարդն եմ հէնց, իմ բարի՛ արքայ:

ԼԻՐ
Կտեսնենք...

ՔԷՆՏ
Ես ձեր բախտի խորտակման
Եւ տառապանքի առաջին օրից
Հետեւել եմ ձեր դժնի քայլերին:

ԼԻՐ
Ուրախ եմ տեսնել:

ՔԷՆՏ
Ի՛նչ ուրախութիւն.
Ամէն ինչ մութ է, մռայլ, մահաբեր,
Ձեր մեծ դուստրերը իրենք կանխեցին
Իրենց պատիժը եւ մեռան նրանք
Յուսալքման մէջ:

ԼԻՐ
Այո, կարծում եմ:

ԱԼԲԱՆԻ
Նա չի իսանում, թէ ինչ է խօսում.

Իզուր ենք հարցեր մենք տալիս նրան:

ԷԴԳԱՐ

Բոլորովին զուր:

**Մտնում է մի սպայ:**

ՍՊԱՅ

Էդմոնդը մեռաւ:

ԱԼԲԱՆԻ

Այդ կարեւոր չէ այժմ ամենեւին.
Դուք, ազնիւ լորդե՛ր եւ բարեկամնե՛ր,
Լսեցէ՛ք մեր կամքն ու ցանկութիւնը.
Ամէն սփոփանք, որ կարող ենք տալ
Այս մեծ դժբախտին, պէտք է որ տրուի:
Իսկ մենք որոշել ենք այսուհետեւ,
Որքան դեռ ողջ է այս վեհ ծերունին,
Վեհապետական մեր իշխանութիւնն
Յանձնել վերստին մինչեւ մահ նրան:
*(Էդգարին եւ Քէնտին).*
Իսկ դուք կստանաք ձեր բոլոր նախկին
Իրաւունքները՝ յաւելումներով
Եւ փառք ու պատուով, որոնց իսկապէս
Դուք արժանի էք: Ամէն բարեկամ
Իր բարի գործի վարձքը կստանայ,
Ամէն թշնամի՝ իր յանցանքների
Քաւութեան բաժակն: Օ՛, տեսէ՛ք, տեսէ՛ք:

**Մտնում է Լիրին:**

ԼԻՐ

Եւ իմ մանկիկը կախուած, խեղդամահ,
Ո՛չ, ո՛չ, կեանք չկայ... եւ ինչո՞ւ պիտի
Ապրեն աշխարհում շուն, ձի, օձ, մկնիկ,
Իսկ դու չշնչես. օհ, էլ չե՛ս դառնայ

Դու երբե՛ք, երբե՛ք, երբե՛ք ու երբե՛ք.
Բա՛ց արեք, խնդրեմ, իմ այս կոճակը.
Շնորհակալ եմ. տեսնո՞ւմ էք դուք այս.
Նայեցեք սրան. նրա շրթունքներն...
Ա՛հ, տեսե՛ք, տեսե՛ք:

**Մեռնում է:**

ԷԴԳԱՐ

Նա ուշաթափուեց.

Տէ՛ր իմ, օ՛հ, տէ՛ր իմ:

ՔԷՆՏ

Պայթի՛ր, սի՛րտ, պայթի՛ր.

Ե՞րբ պիտի պայթես:

ԷԴԳԱՐ

Տէ՛ր, աչքերդ բա՛ց:

ՔԷՆՏ

Մի՛ տանջէք հոգին, օ՛հ, թողէ՛ք անցնի.
Ով կամենում է այս դաժան աշխարհի
Չարչարանքների անիւին գամած
Դեռ պահել նրան աւելի երկար՝
Նա թշնամի է նրան:

ԷԴԳԱՐ

Հա՛, գնա՛ց:

ՔԷՆՏ

Զարմանալի է, որ նա դեռ այնքան
Դիմացաւ. օ՛, նա բռնի էր ապրում:

ԱԼԲԱՆԻ

Տարէ՛ք այստեղից. այժմ մեզ միայն
Սուգն է մնացել:

*(Քէնտին եւ Էդգարին).*

Ո՛վ դուք, իմ ազնիւ
Բարեկամնե՛րս, կառավարեցէ՛ք
Այս արնաշաղախ պետութիւնը դուք,
Արիւնաշաղախ այս տէրութիւնը:

ՔԷՆՏ

Ես ճանապարհ եմ ընկնելու շուտով.
Կանչում է ահա թագաւորը ինձ,
Եւ չպէտք է ես ասեմ նրան՝ ոչ:

ԱԼԲԱՆԻ

Պէտք է դժնդակ այս ժամանակի
Ծանր բեռան տակ համբերող լինենք,
Եւ ասենք լոկ այն, ինչ սիրտն է զգում,
Ոչ թէ այն, ինչ որ հարկ է ասելու:
Ամենից ծերը ամենից աւել
Տառապանք կրեց: Մենք որ կրտսեր ենք,
Ո՛չ կապրենք այդքան, ո՛չ էլ կտեսնենք:

**Վերջ**

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

ՇԷՔՍՊԻՐ

# ԱՐՔԱՅ ԼԻՐ

Ողբերգութիւն հինգ արարուածով

Համակարգչային էջադրումը՝
ԱՆԺԵԼԱ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

Կազմի ձեւաւորումը՝
ԴԱՒԻԹ ՊԵՏՐՈՍԵԱՆԻ

Գրականութեան եւ արուեստի թանգարանի հրատարակչութիւն
Երեւան, Արամի 1